1916

№ 3.—Յունուարի 10

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** **տարեկան 4** *ռուբլի*, **կէս տարուան 2** *ր.* **50** *կ.* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ր.*, **կէս տարուան 2** *ր.* *Արտասահման՝* **տարեկան 5** *ր.* **կէս տարուան 3** *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաշրաղեան հրապար.* № 7.
**Հեռախօս № 29.**

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1916 Թ.*

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն. 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ։ 5. Փոստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած է 16 մեծադիր երեսներից և լոյս կըտեսնէ կիրակի օրերը։*

*ՄԻՆՉԵՒ ԱՅԺՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՆ ՏՈՒԵԼ ԱՇԽԱՏԱԿՑԵԼՈՒ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ԻՆ*

*Աբեղեան Մանուկ, Ալթունեան Գէորգ, Աղասարեան Բուղդան (բժշկապետ), Այվազեան Բագրատ, Բաշինջաղեան Գէորգ (նկարիչ), Բերբերեան Մինաս, Դեմիրճեան Դերենիկ, Եսայեան տիկ. Զապէլ, Դաւթեան Յով., Էդիլեան Գուրգէն, իշխ. Թումանեան Գէորգ, իշխն. Թումանեան Մարիամ, իշխ. Թումանեան Միքայէլ, Թումանեան Յովհաննէս, Լէօ, Խանդաղեան Յոլակ, Կանայեանց Սա., Կարապ (Թաշճեան Կ.), Ճուղուրեան Յարութիւն քահանայ, Մալխասեան Ստեփան, Մանուէլեան Միքայէլ, Մատէնճեան Մամբրէ, Մելեան Մեսրոպ քահ., Մուսայէլեան Հ., Յովհաննիսեան Միքայէլ, Յարութիւնեան Իսահակ, Յովհաննիսեան Հայկ, Յովհաննիսեան Տիգրան Նար-Դոս, Նաւասարդեան Բագրատ (բժշկապետ), Շարաֆեան Ալեքսանդր, Շիրվանզադէ, Չալխուշեան Գր., Ջամալեան Արշակ, Սպենդիարեան Յովհաննէս, Տէր-Դանիէլեան Դաւիթ, Տէր-Գէորգեան Վահան, Տէր-Միրաքեան Յովհաննէս, Փիրալեան Յարութիւն, Փիրումեան Տիգրան, Քամալեան Սարգիս, Օլթեցեան Արամ։*

*Խմբագիր՝* **Ս. Յարութիւնեանց**

*Հրատարակիչ՝* **Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# Պաշտօնական

### ԿՈՎԿԱՍԻ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՇՏԱԲԻՑ

*Զարամիտ անձինք տարածում են անհիմն լուրեր, իբր թէ մենք ունեցել ենք անյաջողութիւններ Պարսկաստանում և Կովկասեան ճակատում։ Առ այժմ, փառք Աստուծոյ, մեր առաջխաղացումն ընթանում է շատ յաջող։*

*Մէկ տարուայ ընթացքում ուժեղ կերպով ամրացրած տաճկական դիրքերը գրաւել են մեր քաջարի զօրքերը, տալով չնչին զոհեր։*

*Մենք խլել ենք թշնամուց 12 թնդանօթ, 9 գնդացիր, թնդանօթի մի քանի հազար ռումբեր, միլիոնից աւելի հրացանի գնդակներ և շատ ուրիշ պատերազմական աւար։*

*Գերել ենք 50 տաճկական սպայ և շատ ասկեար։*

*Մի քանի տաճկական գնդեր բոլորովին ոչնչացրուած են։*

*ԱՅՆ ԱՆՁԻՆՔ, ՈՐՈՆՔ ԶԱՐԱՄԻՏ ԼՈՒՐԵՐ ԿԸ ՏԱՐԱԾԵՆ, ԱՅՍՈՒՀԵՏԵՒ ԿԵՆԹԱՐԿՈՒԵՆ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԴԱՇՏԱՅԻՆ ԴԱՏԻ ԻԲՐԵՒ ՅԱՆՑԱՒՈՐՆԵՐ։*

### ՍԵՂՄՈՒԱԾ ՇԱՐՔԵՐՈՎ

*Իր բարօրութեան համար կռուող մարդկութիւնը ամենահին ժամանակներից է գտել «սեղմուած շարքերով» նշանաբանը։ Սա նշանակում է ամենասերտ գործակցութիւն, ցրուած ոյժերի կուռ համախմբում, կոխ՝ ուս ուսի տուած... Եւ ամեն մի երկրի բարօրութեան հարցը կախուած է եղել այն հանգամանքից, թէ ինչ չափով է գործադրւում այս սկզբունքը։*

*Մեզանում միշտ թոյլ է եղել համայնական կուռ գործակցութիւնը։ Եւ այսօր էլ, երկար դարեր փորձուելուց և մեծ քաղաքակրթութիւններին խղճմտանքով աշակերտելուց յետոյ, չենք կարող ասել թէ շատ ենք առաջ անցել՝ մեր պատմական անկազմակերպ թուլութիւնը մոռացման աշխարհն ուղարկած լինելու համար։ Մենք, այո, սովորեցինք կուլտուրական հիմնարկութիւններով կազմակերպել մեր ազգային բախտի կառուցումը։ Բայց տասնեակ տարիների այդ մեծ աշխատանքի մէջ դարձեալ չափազանց մեծ տեղ տուինք անջատականութեան, առանձնացման։ Կղզիացած են մեր համատիպ հիմնարկութիւններն անգամ։ Այսպէս, մեզ չըյաջողուեց մինչև այսօր ստեղծել փոխադարձութեան, գործակցութեան սկզբունքով ուժեղ մի դպրոցական սիստեմ։ Այդ անկարողութեան հետևանքն է որ մի հարուստ կամ ապահով դպրոցի կողքին ապրում է տնանկութեան անողորմ տառամներով կրծոտուած մի այլ դպրոց։ Կարծէք այս երկու հիմնարկութիւնները մի հասարակութեան չեն պատկանում, միևնոյն նուիրական սկզբունքին չեն ծառայում։ Վաղուց ենք հասկացել այս դրութեան անհանդուժելիութիւնը, բայց դպրոցական մի ընդհանուր կացութիւն, մի ընդհանուր ֆոնդ չը կարողացանք ստեղծել... Տեղայնութիւնը գերակշռող, ամէն ինչ չէզոքացնող ոյժն է մնում մեզանում։ Օրէցօր մենք, կարծէք, դէպի ընդհանուրը, դէպի համայնականը չենք գնում, այլ դէպի մասնաւորումը, դէպի մանրացումը։*

*Հետևանքն այն է լինում, որ ստացւում է ցաք ու ցրիւ ոյժերի պատկեր, «սեղմուած շարքերի» կատարեալ բացակայութիւն։*

*Եթէ համատիպ հիմնարկութիւնների մէջ բացակայում է համերաշխութիւնը, փոխադարձ գործակցութեամբ, ընդհանուր ջանքերով զարգանալու փրկարար սկզբունքը, բնական է որ կղզիացումը աւելի խիստ չափով աչքի ընկնող և աւելի անդամալուծող լինի այն հիմնարկութիւնների մէջ, որոնք ծառայում են ազգային նպատակին տարբեր միջոցներով, տարբեր ճանապարհներով։ Այսպէս, օրինակ, դպրոցի, թատրոնի, գրականութեան, բարեգործութեան, եկեղեցու հիմնարկութիւնների մէջ գոյութիւն չունեն ընդհանուր կապեր, փոխադարձ օգնութեան գիտակցութիւն։*

*Եւ սակայն՝ հարկաւոր է և ժամանակ է որ մեզանում լուրջ փորձեր արուեն այս ցաւալի և ցաւագար երևոյթը վերացնելու համար։ Հարկաւոր են ուժեղ մղումներ, հարկաւոր են խոշոր օրինակներ։*

*Մեր կարծիքով, այսպիսի մի խոշոր օրինակ կարող է տալ Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութիւնը։ Ներկայումս նա ունի 72 տեղական ճիւղեր և այսպիսով հանդիսանում է ամենաընդարձակը համայնական ինքնօգնութեան և ինքնագործունէութեան սիստեմներից, որ երբ և իցէ կարողացել է ստեղծել հայ ժողովուրդը... Սակայն՝ Ընկերութիւնը դեռ կազմակերպչական առաջին աստիճանն է կարողացել իրագործել, համախմբելով մի ընդհանուր դրօշակի տակ այդքան մարմիններ։ Ներքին ոյժի, «սեղմուած շարքերի» հասկացողութեան տեսակէտից Ընկերութիւնն էլ մնում հայ իրականութեան մի հարազատ զաւակ։ Ճիւղերի մէջ տիրում է խիստ տեղայնութիւնը, կղզիացումը... Ընդհանուր նպատակներ ընդհանուր գործակցութեամբ իրագործելու կացութիւնից դեռ*

շատ հեռու են այդ անջատ ճիւղերը։ Եւ սակայն՝ ապացուցելու կարիք չըկայ, թէ որքան խոշոր կըլինէր նրանց կատարած կուլտուրական դերը, եթէ նրանց գործունէութիւնը լոկ կանոնադրութեամբ չըլինէր միացուած, այլ ներքին ուժեղ մերձեցմամբ և փոխադարձ աջակցութեան խորունկ գիտակցութեամբ։ Անջատ ուժերը, տեղայնութեան մատնուած լինելով, կարող են միմիայն մի խեղճ կացութիւն քարշ տալ։ Մինչդեռ եթէ նրանք միանան փոխադարձութեան ոգով, կենսունակութեան անհատնում աղբիւր կունենան աւելի ևս զարգանալու համար։

Ի՞նչպէս իրագործել այս միտքը։ Միջոցներ շատ կան, և մենք մի ուրիշ անգամ կըվերադառնանք նրան։ Այսօր ամենագլխաւորը մեր արծարծած գաղափարի անհրաժեշտութեան զգալն է։ Այս անհրաժեշտութիւնը կառաջացնէ մտքերի եռանդուն փոխանակութիւն, որից և կըծնուի գեղեցիկ գործը։ Ընկերութեան կենտրոնը պիտի յանձն առնէ այս մտքի արծարծումը և տարածումը։ Այստեղ առաջ է գալիս պարբերաբար ճիւղերի ներկայացուցիչների համագումարներ հաւաքելը։ Մենք հաւատացած ենք որ այս միջոցով հեշտ կարելի կըլինի մշակել այնպիսի սկզբունքներ, որոնք, մարմնանալով կենդանի գործի մէջ, կըդառնան առողջ սաղմեր՝ մեր անջատ, տեղայնութիւնից տառապող կուլտուրական ջանքերը միացնելու, նրանցից կուռ կազմակերպութիւններ, «սեղմուած շարքեր» ստեղծելու համար...

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՑ

Կ. Հ. Բ. Ը-թեան խորհուրդը ստացել է Վեհափառ Հայրապետի դիւանապետ Տիրայր վարդապետի ստորագրութեամբ հետեւեալ գրութիւնը.—

Նորին Վեհափառութիւնն, ստանալով Խորհրդիդ՝ տարոյս դեկտ. 19, № 1056 գրութեան հետ ընկերութեանդ հրատարակութեամբ նոր լոյս տեսած «Համբաւաբեր» շաբաթաթերթի անդրանիկ համարը, բարեհաճեց իւր բարձր գոհունակութիւնը յայտնել Խորհրդիդ այդ մասին, մաղթելով նորածիլ «Համբաւաբեր»-ին երկար նորանոր տարիներ թեւակոխել ու յարատեւել և առատապէս տարածել մեր բազմակարօտ ժողովրդի ամեն խաւերի մէջ ընկերութեանդ բարւոյ և լուսոյ գաղափարները՝ դառնալով մի անհրաժեշտութիւն թէ ընկերութեանդ և թէ նորա բազմաճիւղ մասերի և թէ հայ ժողովրդի համար, օրհնելով թէ հրատարակչութեան նպաստողներիդ և թէ խմբագրին եռանդուն և անսայթաք տանելու սկսած գործը։

Հայրապետական դիւանս պարտք է համարում յայտնել այս մասին պատուարժան Խորհրդիդ։

## ՆՈՒԷՐՆԵՐ

### «Համբաւաբեր»ի տարածման համար

«Համբաւաբեր»-ի № 2-ում յիշուած էր, որ մի քանի անձինք ներկայացրել են խմբագրութեանս 40 օրինակի վճար, որ թերթը ձրի ուղարկուի գիւղական աղքատ դպրոցներին և գիւղական հայկական հաստատութիւններին։

Այժմս խմբագրութիւնը ստացել է նոյն նպատակի համար պ.պ. Կ. Ա. Խալաթեանից 500 ր., Ն. Ա. Աղամեանից 100 ր. և Տիկ. Ա. Ն. Աթաբէկեանից 4 ր. մէկ օրինակի համար։

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Պետական բիւջէ։ Բիւջէտային Յանձնաժողովը վերջացրեց պետական բիւջէի քննութիւնը։ Մնում է որ բիւջէն քննուի և ընդունուի Պետական Դումայի կողմից։ Ենթադրւում է, թէ Դումայի բացումը տեղի կունենայ յունուարի մէջին։ Նրա պարապմունքները կը տեւեն միայն մի քանի օր և բիւջէի քըննութիւնից դուրս չեն գայ։

Պատերազմական ժամանակի դժուար և խառն հանգամանքները անկայուն, ենթադրական բնաւորութիւն են հաղորդում պետական բիւջէի շատ մասերին։ Անցեալ տարիների հաշուառ փորձը պէտք է լինում թողնել մի կողմ, քանի որ նրանք նորմալ ու խաղաղ տարիների արդիւնքն են ներկայացնում։ Այսպիսի անկայուն պայմանների մէջ կազմուած բիւջէն նախատեսում է պետական եկամուտներ 1916 թուին 3,250,915,197 ր.։ Եկամուտների մի քանի յօդուածները կրճատուել են։ Օրինակ, մաքսային հասոյթը պակասել է 80 միլ. րուբլով։ Ահագին մի բաց թողնում է և օղու մենավաճառի վերացումը։ Այս աղբիւրից պետութիւնն ստանում էր տարեկան զուտ արդիւնք 700 միլիոն րուբլի։ Բիւջէտային Յանձնաժողովում կարդացուած զեկուցումները վկայում են, որ մենավաճառի ջնջումը ահագին ներգործութիւն է արել ժողովրդական տնտեսութեան վրայ—աշխատանքի ընդունակութիւնը ազգաբնակութեան մէջ աւելացել է, ժողովրդական խնայողութիւնների քանակութիւնը շատացել է։ Բայց պէտք է լրացնել այս մեծ բացը, որ օղեվաճառութիւնը գոյացրել է պետական բիւջէի մէջ։ Բացի դրանից պատերազմական ահռելի ծախսերն էլ պիտի գան ծանրանալու բիւջէի վրայ, պահանջելով եղած հարկերի և տուրքերի աւելացում և նոր հարկերի ստեղծում։ Ֆինանսների մինիստրութիւնը իրականացրել է եկամտային հարկը, որ սակայն անձնական հանգամանք ունի, այսինքն՝ պիտի ստացուի անհատների վաստակածից։ Մինչդեռ բիւջէտային Յանձնաժողովը արդարացի է համարում, որ եկամըտային հարկի մէջ մտցուին և կալուածները։ Կալուածների ընդհանուր արժողութիւնը Ռուսաստանում հաշւում է 60,000,000,000 րուբլի, և այս գնահատումից կարելի էր ստանալ տարեկան 200—300 միլիոն ր.։ Բացի դրանից յանձնարարւում է, որ սահմանուեն մի շարք պետական մենավաճառներ—ելեքտրական ուժի, ծխախոտի և այլն։

Պետական ծախսերը 1916-ին հաշուած են 3,558,000,000 րուբլի։ Դէֆիցիտ նախատեսւում է 337 միլիոն րուբ.։

—Անօրինակ թանգութեան առաջն առնելու համար Պետրոգրադում հաստատուած է պարենաւորման գերագոյն խորհրդակցութիւն, որի նախագահն է հաղորդակցութեան ճանապարհների մինիստրը, և որին մասնակցում են զինւորական, ներքին գործերի, ֆինանսների մինիստրները։

— Թանգութիւնը առաջացրել է ծառայողների ռոճիկների աւելացման անհրաժեշտութիւնը։ Առ այժմ աւելացուած են ժողովրդական դպրոցների ուսուցիչների և վարժուհիների ռոճիկները ամսական 5 րուբլով, իսկ ստորինական պաշտօնեաների ռոճիկները 25—50 տոկոսով։

## ԿԵԱՆՔԻ ԹԱՆԳՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

Պատերազմի երկրորդ տարուան ընթացքում մեր գիւղերում սկսում է զգացուել ա շ խ ա տ ո ղ  ձ ե ռ ք ե ր ի  պ ա կ ա ս ու թ ի ւ ն։ Չխօսելով պատերազմով բռնուած շրջանների և նրանց մօտիկ վայրերի մասին, որտեղ բնակչութեան արտադրական գործունէութիւնը համարեա դադարել է,—կենտրոնական և արեւելեան Ռուսաստանի հացաբեր տեղերից լսում են գանգատներ ցանքսերի զգալի նուազման մասին. . . . առողջ և ուժեղ մարդ պատերազմը խլել է սովորական արտադրական աշխատանքից։ Աշխատող ձեռքերի պակասութիւնը և թանգութիւնը առաջ են բերում ոչ միայն գիւղատնտեսական, այլ և գործարանական արտադրութիւնների կրճատում, որոնք արտադրողին այժմ աւելի թանգ են նստում, քան մինչև պատերազմը։

Ինքն ըստինքեան հասկանալի է, որ մենք չենք կարող վերադառնալ արտադրութիւնների մինչև պատերազմ եղած հին գներին թէկուզ այն պատճառով, որ փողի աժանութիւնը և ռուբլու արժէքի ընկնելը, որպէս համաշխարհային երեւոյթներ, ներկայ վայրկեանում չեն կարող վերացուել։ Բայց վերը մատնացոյց արուած բոլոր հանգամանքները, միացած պատերազմական ժամանակի պարագաների հետ, ստեղծում են շահադէտների և առևտրական դասակարգի անբարեխիղճ տարրերի համար շատ նըպաստաւոր պայմաններ գները ուռցնելու համար։ Բնակչութեան անբարեխիղճ շահագործման դէմ կռուելու համար վաղուց է զանազան միջոցներ են ձեռք առնում կառավարութիւնը, քաղաքային ինքնավարութիւնները, զեմստուօները, կոոպերատիւները և հասարակական այլ կազմակերպութիւնները։ Սակայն՝ կառավարչական իշխանութեան տեղական օրգանների և հասարակական կազմակերպութեանց ձեռք առած միջոցները վերաբերել են միայն առանձին շրջանների և չեն տուել համարեա ոչ մի հետևանք։ Առաջնակարգ մթերքների լայնածաւալ կայսրութեան ամբողջ տարածութեան վրայ հաւասարաչափ բաժանելը, ըստ կարելւոյն խուսափելով միջնորդներից և հեռացնելով այս գործի միջից անբարեխիղճ շահագիտութիւնը,—համապետական բնոյթ կրող մի հարց է, որ կարող է լուծուել միմիայն կենտրոնական կառավարչական իշխանութեան և հասարակական ուժերի համերաշխ գործակցութեամբ։

Ամենից առաջ անհրաժեշտ է, համապատասխան բնակչութեան ու զօրքի պահանջների, կազմակերպել կենսական մթերքները երկաթուղիներով սպառման կենտրոնները համաչափ և կանոնաւոր բերելու գործը։ Երբ այս խնդիրը բաւարար լուծուի, շահագիտութիւնը, որ գները բարձրացնելիս միշտ պատճառ է բերում, թէ պաշար չկայ և ապրանք չի ներմուծւում, կը զրկուի գներն ուռցնելու այդ գլխաւոր հիմքից։

Թանգութեան դէմ կռուելու համար Պետրոգրադում հաստատուած պարենաւորման գործի առանձին խորհրդակցութիւնը, որ գործում է երկրագործութեան նախարարի նախագահութեամբ, վերջին ժամանակներս որոշեց քաղաքների և առանձին շրջանների պարենաւորման մթերքների պահանջները և այս տուեալների հիման վրայ կազմեց մեծաքանակ ապրանքներ փոխադրելու նախագիծ։ Այս նախագծի յաջող իրագործման համար 34 նահանգներում և շրջաններում նշանակուած են պարենաւորման գործի լիազօրներ։ Մօտաւոր ապագան ցոյց կը տայ, թէ կենտրոնական խորհրդակցութեան մշակած մեծաքանակ փոխադրումների նախագիծը որքան է համապատասխան երկրի կենսական շահերին, և թէ ինչ չափով պարենաւորման կազմակերպուած տեղական խորհրդակցութիւններն ընդունակ կը լինեն չափազանց թանգութեան առաջն առնելու, բայց մենք չենք կարող ափսոսանքով չընկատել, որ տեղական խորհրդակցութիւնների մէջ հասարակական տարրը քիչ ներկայացուցիչներ ունի, և վճռական դեր խաղում են վարչական իշխանութեան ներկայացուցիչները։

Մեզ թւում է, թէ առանց տեղն ու տեղը հաւաքուած նախնական լուրջ տուեալների կազմուած «մեծաքանակ փոխադրումների» նախագիծը անհրաժեշտ կը լինի նորից քննելու և վերակազմելու, որ հազիւ թէ կարելի լինի բաւական յաջող իրագործել առանց հասարակական տարրերի լայն մասնակցութեան։

Շահագիտութիւնը սանձահարելու համար պարենաւորման գործի կենտրոնական խորհրդակցութիւնը նախագծում է առանձին շրջաններում սահմանել հացահատիկների համար հաստատուն գներ և հացը գնել կառավարութեան ձեռքով բնակչութեան ու զօրքի համար.

Սակայն՝ շահագիտութեան դէմ կռուելու գործում ամենից կարեւոր նշանակութիւն ունի բնակչութեան բոլոր խաւերի լայն մասնակցութեամբ արտադրական ու սպառողական կոոպերատիւների կազմակերպումը։ Այժմեան պայմաններում այդ կարեւոր է մանաւանդ քաղաքների համար, որ հանդիսանում են գիւղացու ու քաղաքացու հաւասարապէս կեղեքող շահագործման ամենամեծ զարգացման տեղերը։

Արտադրական կոոպերատիւները մեզանում շատ նուազ են զարգացած։ Քիչ աւելի են համեմատաբար հեշտութեամբ առաջ եկող սպառողական ընկերութիւնները։ Ռուսաստանում 1914 թ. եղած այդպիսի 10,080 ընկերութիւնից քաղաքներում կար մօտ 800։ Պարզ է, որ սպառողական կոոպերատիւների այս չնչին թիւը չի կարող էական բարուոքումն մտցնել մեր տնտեսական կեանքում։ Սակայն՝ այժմ այդ ուղղութեամբ բովանդակ Ռուսաստանում աշխատանք է կատարւում, և նոյն իսկ մեզանում, Թիֆլիսում, պատերազմի ժամանակ բացուեց մի քանի կոոպերատիւ խանութ։ Կոոպերատիւ շինարարութիւնը կարեւոր է մանաւանդ Անդրկովկասի գիւղերում, որտեղ զեմստուօ չըլինելու պատճառով չկայ հասարակական ոչ մի կազմակերպութիւն, որ պաշտպանէ գիւղական անջատ տնտեսութիւնները աւելի ուժեղ տարրերի տնտեսական ճնշումից։

Նորերս Պետրոգրադում բոլոր «առանձին խորհրդակցութեանց» առաջադիմական անդամների խորհրդակցութեան մէջ քննւում էր նոյն իսկ ս պ ա ռ մ ա ն  կ ա ն ո ն ա ւ ո ր մ ա ն  հարցը՝ այն նկատումով, որ հետզհետէ սաստկանում են գանգատները, թէ ցանքսերի և գործարանական արդիւնաբերողների արտադրութիւնները նուազում են։ Խօսում էին պետական կամ հասարակական մենավաճառ հաստատելու և առաջնակարգ մթերքները բաժնեթղթերով ստանալու մասին։

Սակայն՝ մենք հաստատ հաւատ ունենք, որ մեծ և իր արտադրութեամբ առատ Ռուսաստանի համար դեռ ևս շատ հեռու է այն ժամանակը, երբ անհրաժեշտ կը լինի սպառումը սահմանափակել և կանոնաւորել։

Ց. Փիրալեան

---

## ՍՈՎԸ ՊԱՏՃԱՌ ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ

Ֆրանսիական յայտնի գիտնական Hucard, խօսելով վարակիչ հիւանդութիւնների մասին, ի միջի այլոց, թոքախտի, գրում է՝ «Le bacile nul, la terraine est t ut»—այսինքն՝ «բացիլը ոչինչ, հողն է գլխաւորը՝ ամենը» նշանակում է՝ վարակիչ հիւանդութիւնները, որոնց պատճառները զանազան տեսակ մանրէներ, միկրոբներ են՝ թէ բուսական և թէ կենդանական ծագումից, ոչինչ են, եթէ մարդի մէջ չկայ տրամադրութիւն նրանց ընդունելու և զարգացնելու իր մէջ։ Մենք գիտենք, որ շատ դէպքերում մի որևիցէ ընտանիքում, հիւանդանոցում, ուր բոլոր անդամները ենթարկւում են վարակի ազդեցութեան, բայց չեն վարակւում բոլորը, որովհետև նրանք չունեն իրանց կազմուածքի մէջ նախատրամադրութիւն, ասել է թէ նրանց terrain չի ընդունում վարակը, և եթէ ընդունում է, յաղթում է այդ վարակին, բացիլին։

Իսկ այդ նախատրամադրութիւնը գերազանցապէս յառա-

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

Գաղթականների վիճակը բարուոքող գլխաւոր լիազօր՝ գեներալ Վ. Ս. Թամամշեանի դիւանատանը որոշուել է կատարել կանոնաւոր անուանական ցուցակագրութիւն բոլոր գաղթականների։

Այդ մասին գեներալի դիւանատունը բանակցութիւն է սկսել Կ. Հ. Բ. Ընկերութեան կից Հայկական Կենտրոնական կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանի հետ և առաջարկել է, որ կոմիտէն ընդունի իր վրայ ցուցակագրութեան աշխատանքը։ Կենտրոնական կոմիտէն տուել է իր համաձայնութիւնը և արդէն սկսել է կատարել սկզբնական աշխատանքները։ Ցուցակագրութիւնը կատարուելու է մէկ օրուայ ընթացքում փետրուարի առաջին կէսում։

— Թիֆլիսի Նահանգապետի դիւանատունը ուղարկեց 10,000 ր. արևմտեան և կովկասեան ճակատներից Թիֆլիս եկող փախստականներին օգնութեան։

— Կովկասեան ճակատի փախստականների գործերի գլխաւոր լիազօրը որոշել է ծախսել սոյն տարուայ յունուարին Կովկասի փախստականների պահպանման վրայ

| | | |
|---|---|---|
| Երևանի | նահանգում | 581,724 ր. |
| Գանձակի | » | 52,476 ր. |
| Սևծովեան | » | 13,464 ր. |
| Ստաւրոպոլի | » | 34,716 ր. |
| Թերեքի | շրջանի | 19,092 ր. |
| Կուբանի | » | 55,284 ր. |
| Կարսի | » | 135,612 ր. |
| և Բաթումի | » | 64,800 ր. |

— Կովկաս. ճակատի գաղթականական գործի անօրինող գեներալ Թամամշեանի կարգադրութեամբ Փոխարքայի դիւանատունը Երևանի Նահանգի գաղթականներին վերմակներ գնելու և պատրաստելու համար յատկացրել է 68,000 ր., Թիֆլիսի Վրաց Բարեգ. Ընկ. 80,000 ր. հայ փախստականներին օգնութիւն հասցնող Բագուի կոմիտէին 25,000 ր. յատկապէս անկողինների համար։

— Գորուց «Կանանց խմբակը ուղարկեց «Հորիզոն»-ին 40 ր. յօգուտ հայ որբերի։ «Հայ գրասէրների խմբակը» դպրոցի աշակերտութեան հետ հաւաքեց երեխաների տաք շորեր և ուղարկեց Թիֆլիս ուսուցչական կոմիտէին, նաև դրամ 4 ր.։

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԸ ՏԱՃԿԱՍՏԱՆՈՒՄ ԵՒ ՊԱՐՍԿԱՍՏԱՆՈՒՄ

Կառավարութեան օգնութիւնը կարօտ փախստականների թիւը Պարսկաստանում և Տաճկաստանում սոյն տարուայ յունուարի 1-ին է.—Վանի շրջանում—5000 (2615 այր, 1075 կին և 1310 երեխայ), Բայազիտի շրջանում—1100 (165 այր, 555 կին և 380 երեխայ և Դիադինի շրջանում—6000 (1800 այր, 1500 կին և 2700 երեխայ)։ Պարսկաստանում.—Ուրմիայի վիճակում—15000 (4000 այր, 6000 կին և 5000 երեխայ) Դիլմանի վիճակում 20,000 (2000 այր, 9000 կին և 9000 երեխայ) Խոյի վիճակում 4500 (1000 այր, 1300 կին և 2200 երեխայ)։ Ընդամենը Տաճկաստանում և Պարսկաստանում 51,600 փախստական (13580 այր, 19430 կին և 18540 երեխայ)։ Այդքան փախստականներին յունուարի ընթացքում կերակրելու համար նշանակուած է.—Վանի շրջանում,—28432 ր., Բայազիտի շրջանում 6144 ր., Դիլիմանի վիճակում 111600 ր. և Խոյի վիճակի համար 24360 ր.

## ԳԱՒԱՌ

Սոնգիուրլի գիւղից (Ալէքս. գաւ.), «Հորիզոնին» գրում են, որ ծաղիկը մեծ զոհեր է տանում. պատահել է մի օրում 7 մեռել։

— Մեղրուց «Հորիզոնին» գրում են. կենսական մթերքների թանգութեան մասին գաղափար են տալիս հետևեալ թուերը.

| | | |
|---|---|---|
| ռուսական ալիւրի փութը | 4 ր. | 20 կ. |
| հացի գրուանքան | — | 10 կ. |
| ցորենի փութը | 3 ր. | 50 կ. |
| գարին » | 1 ր. | 80 կ. |
| նաւթը » | 6 ր. | — կ. |
| բրինձը » | 5 ր. | — կ. |
| 2 տոպրակ ածուխը | 5—6 ր. | — կ. |
| շաքարի գրուանքան | — ր. | 50 կ. |
| գետնախնձորի փութը | 1 ր. | 20 կ. |

* *

— ԲԱԲԳԷՆ ՎԱՐԴԱՊԵՏ. Էջմիածնում բծաւոր տիֆից 42 տարեկան հասակում վախճանուեց։ Նա իր կրթութիւնը ստացել է Շուշուայ թեմական դպրոցում և Գէորգեան ճեմարանում, որը աւարտելուց յետոյ ընդունեց կուսակրօնութիւն։ Օդեսայի համալսարանում հանդուցեալը լսել է իրաւաբանական բաժնի դասընթացը։ Վերջին ժամանակները նա խմբագրում էր Էջմիածնի պաշտօնական «Արարատ» ամսագիրը և անդամ էր «Եղբայրական օգնութեան», իսկ վերջին օրերս նա առաջարկուել էր Ղարաբաղի թեմի առաջնորդ։ Բաբգէն վարդապետը լի էր գործելու եռանդով, և նրա վաղաժամ մահը հայ եկեղեցու և հայ ժողովրդի համար մեծ կորուստ է։

## ՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐ

Մոսկուայում Գասպարեան անկելանոցում դեկտ. 27-ին կայացաւ հայ ծխականների ժողով ինժ. տեխ. Ց. Ամիրեանի նախագահութեամբ։ Գաղտնի քուէարկութեամբ ընտրուեցին խորհրդի անդամներ ինժ. տեխ. Ց. Ամիրեան և փաստաբան Ա. Տէր-Մկրտչեան, իսկ թեկնածու քաղ. ինժ. Ն. Ղոնդախսազեան, Նախագահի առաջարկութեամբ ժողովը յոտնկայս յարգեց Կարապետ եպիսկոպոսի, Ս. Մանդինեանի և Կ. Կուսիկեանի յիշատակը։

---

## ՀԱՅ ԵՒ ԱՍՈՐԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ԱՄԵՐԻԿԱՑՈՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Ամերիկայում, Նիւ-Եորք քաղաքում, հիմնուել է պատերազմից վնասուած հայերին և ասորիներին օգնելու համար մի ընկերութիւն, որի նախագահն է միստր Բարդն, գանձապահը յայտնի միլիոնատէր Կլէյն և քարտուղարը միստր Դատն։

Ընկերութիւնը բացել է Ամերիկայում մեծ ծաւալով ժողովարարութիւն։

Ամերիկայի մեծահռչակ միլիարդէր Րոկֆէլլերը խոստացել է նուիրել այդ ընկերութեան այնքան գումար, որքան ընկերութիւնը կը ժողովի ուրիշներից։

Ընկերութիւնը ուղարկել է Կովկաս գործելու իր հետևեալ անդամներին, Րիխալդ Իոիլէ, Ժորժ Գրասէու, դոկտոր Վիլսոն և Մակալլում. վերջինս շատ լաւ խօսում է հայերէն ու ծանօթ է հայոց գրականութեան հետ։

Այս պարոնները Թիֆլիսի ամերիկական հիւպատոս միստր Սմիտի մասնակցութեամբ արդէն սկսել են գործել։ Դոկտոր Վիլսոնը գնացել է Երևան, ուր պատրաստել է տալիս տաք շորեր գաղթականների համար, իսկ նրա միւս ընկերները առայժմս գտնւում են Թիֆլիսում։

Ամսիս 6-ին սրանք ունեցան հիւպատոսարանում խորհրդակցութիւն Կ. Հ. Բ. Ընկ. և Հայկական կենտրոնական կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանի հետ։ Խորհրդակցութիւնը շարունակուեց հետևեալ օրն էլ, որին հրաւիրուեց մասնակցելու Հ. Կ. կոմիտէի լիազօր պ. Ա. Շարաֆեանը։

Խորհրդակցութեան նպատակն էր ընտրել մի շրջան գաղթականների, պարզել նրանց կարիքները, բացի սննդից և նախ այդ շրջանում լիակատար լրացնել գաղթականների կարիքները և ապա՝ հերթով անցնել միւս շրջաններին։ Որոշուեց առաջին շր-

ջան ընդունել Նոր-Բայազիտ, Ղարաքլիսա և սրա հարևան գիւղերը և Ղազախի գաւառը, հաշուելով այս շրջանի գաղթականների թիւը մօտ 20,000 հոգի։

Ամերիկական ընկերութեան ներկայացուցիչները յանձն առան հոգալ այդ գաղթականների համար անկողին, տաք շորեր, սպիտակեղէն և ամանամաններ, յանձն առան նոյնպէս ապահովացնել դրանց առ այժմ երեք ամսուայ ընթացքում թէյով, շաքարով, նաւթով և սապոնով։

Այս բոլոր կարիքները լրացնելու համար կազմուեց նախահաշիւ մօտ 300,000 րուբլու։ Որոշուեց բերել տալ Անգլիայից և գեղորայք։ Իրերի բաժանումն գաղթականների մէջ կատարելու են իրենք, Ամերիկայից եկած պարոնները աջակցութեամբ Կ. Հ. Բ. Ընկ. լիազօրների և գաւառական ճիւղերի։ Երկու-երեք օրից յետոյ նրանք ուղևորւում են գաւառ։ Պէտք է յուսալ, որ ամենուրեք ջերմ աջակցութիւն ցոյց կը տրուի հեռու երկրից եկած մարդասէր ամերիկացիներին։

---

## ՆԱՄԱԿ ԴԻԼԻՋԱՆԻՑ

Դեռ 1913 թուականից մի խումբ երիտասարդներ միտք են յղանում կազմել մի ընկերութիւն պարբերական ներկայացումներ կազմակերպելու։ Չնայելով բամբասանքներին՝ երիտասարդները չյուսահատուեցին, այլ ընդհակառակը, ուսուցիչների և մի խումբ երիտասարդների հետ տալիս են ներկայացումներ, համերգներ և ընտանեկան դասախօսութիւններ։ Այժմ ոգևորուած ցանկանում են կազմել մի խմբակցութիւն՝ ընդունելով Կ. Հ. Բ. Ը. տեղական ճիւղի հովանաւորութիւնը։ Ընկերութիւնը, որ կոչւում է Դ ի լ ի ջ ա ն ի ս ի ր ո ղ ն ե ր ի ը ն կ ե ր ա կ ց ու թ ի ւ ն, զարգանում է և արդէն ունի 40 անդամ, ուսուցիչներ, ուսանողներ, արհեստաւորներ և վաճառականներ։

Նախ անցեալ 1914 թ. ընկերակցութիւնը տուել է մի շարք երեկոյթներ և ներկայացումներ ինքնուրոյն և թարգմանական պիէսներից, կազմակերպել է անդամների համար դասախօսութիւններ և անցեալ ամառ Բարեգործական Ընկ. տեղական ճիւղի օգտին տուել է մի շքեղ գրօսանք, որի զուտ արդիւնքը յանձնուել է յիշեալ ընկերութեանը։

1915 թ. սիրողների ընկերակցութիւնը նորից սկսել է իր գեղեցիկ աշխատանքը և մինչև այժմ տուել է երեք ներկայացում և մէկ համերգ։

Դեկտեմբերի 19-ին 1915թ. Կ. Հ. Բ. Ը. գրադարան-ընթերցարանի դահլիճում նոյն խմբակցութեան նախաձեռնութեամբ տեղի ունեցաւ համերգ գրական-երաժշտական բաժնով։

Երգում էր եռաձայն երկսեռ խումբը ուսուցիչ Արմ. Մկրտչեանի ղեկավարութեամբ։ Երգեցին հինգ հայերէն և երկու ռուսերէն երգ։ Երգերը յաջող էին, մանաւանդ որնգային երգը ջութակի և ֆիս-հարմոնիայի դաշնակցութեամբ։ Ապա խաղացին «Ես մենայ» վոդ., որն անցաւ շատ սահուն և ուրախ, եղան պարեր։

Երեկոյթը անցաւ յաջող, և հասարակութիւնը գոհ սրտով հեռացաւ դահլիճից։

Էխօ

---

## Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԵՒ ՆՐԱՆ ԿԻՑ Հ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ՏԱՐԵԳԻՐԸ

Յովհաննէս աւ. քահ. Տէր-Գալստեանը ծնուած է 1833 թ. Ախալքալաքում։ Հանգուցեալի պապը մի քանի ընտանիքի հետ Գանձակի Ոսկանապատ գիւղից գաղթել են Վրաստանի Ախալքալաք գիւղը։ 1847 թ. մտնում է Թիֆլիսի հայոց Ներսիսեան դպրոց Շանշեանի տեսչութեան ժամանակ, որին յիշում էր խորին ակնածութեամբ։ 1853-ին աւարտում է Ներսիսեան դպրոցի դասընթացը գերազանց թուանշաններով։ Հանգուցեալը դրա-



ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՒ. Ք. ՏԷՐ-ԳԱԼՍՏԵԱՆ

ւում է երջանկայիշատակ Ներսէս կաթողիկոսի ուշադրութիւնը, որի հրամանով էլ 1853 թ. յուլիսի 20-ին Թիֆլիսի Վանքի մայր եկեղեցում, ձեռնադրւում է քահանայ։ Տէր-Յովհաննէսը քաջ տեղեակ էր և վրացերէն գրական լեզուին և եկեղեցական ճաշոց գրքից տէրունական տօների գլխաւոր աղօթքները և օրհնութիւնները թարգմանել էր վրացերէն՝ ժողովրդին եկեղեցում կարդալու համար։

Ներսէսի և Շանշեանի ոգով սնուած Տէր-Յովհաննէսը ամեն կերպ աշխատում է հայախօսութիւն տարածել իր ծուխի մէջ, բաց է անում իր տանը դպրոց և իր եղբօր հետ ձրի ուսուցանում թէ հայերէնը, և թէ վրացերէնը և ուր յաճախում են նոյն իսկ վրացոց իշխան Թարխանովների որդիքը. սրա համար 1862-ին Մատթէոս կաթողիկոսից ստանում է լանջախաչ, իսկ թեմակալ Մակար արքեպիսկոպոսը 1866-ին հայախօսութիւն ու ընթերցանութիւն տարածելու համար շնորհում է խաչափիլոն կրելու իրաւունքը.

Հանգուցեալը լաւ յարաբերութիւն հաստատելով բոլոր վրացիների հետ՝ ու սիրելի է դառնում ամենքին այնքան, որ Թարխանովները հանգուցեալի խնդիրքով ընծայում են գիւղի մէջ տեղ եղած մօտ 400 քառ. սաժ. պարսպապատ հինաւուրց ամրոցը, որի համար 1871 թուին Գէորգ կաթողիկոսից արժանանում է աւագ քահանայութեան։

Եօթանասնական թուականներին բացւում է Ախալքալաքում պետական միջնակարգ դպրոց, ուր կրօնը և հայոց լեզուն աւանդում է Տէր-Յովհաննէսը։

1887-ին Տէր-Յովհաննէսի եռանդուն ջանքերով բացւում է հայոց ծխական դպրոց, որի հոգաբարձու է կարգւում Մակար կաթողիկոսի կոնդակով։ Տէր-Յովհ. իր եղբայր Գալուստը և սրա ամուսին Կատարինէն կառուցում են իրենց սեփական այգում մի հոյակապ եկեղեցի 1888-ին՝ ծախսելով 30,000 րուբլուց աւելի, որի համար Մակար կաթողիկոսից ստանում են օրհնութեան կոն-

դակը և եկեղեցու գաւթում թաղուելու իրաւունք։ Այնուհետև հանգուցեալը կառուցանում է հայոց դպրոցի հոյակապ շէնքը 1898-ին, ուր այժմ զետեղուած է արքունական հիւանդանոցը։ Այս գործի համար Մկրտիչ կաթողիկոսից ստանում է վարդապետական լանջախաչ։ Մեծ ջանք է գործ դնում ուրիշների հետ նաև դպրոցական շէնքի կողքին աղբիւրի ջուր բերելու։ Հայոց դպրոցի նիւթականը ընդմիշտ ապահովելու համար 1908-ին կտակեց Կ. Հ. Բ. Ը-թեան թէ իր երկյարկ տունը, թէ դպրոցի շինութիւնը և թէ մի դեսեատինից աւել այգին մօտ 20,000 րուբլի արժողութեամբ, պայմանով, որ իր մահից յետոյ բոլորի եկամուտը գործադրուի Ախալքալաքի հայոց կրթական գործի վրայ, իսկ ընկերութեան փակուելու դէպքում անցնի Ախալքալաքի հայոց եկեղեցիներին։ 1903-ին լրացաւ Տէր-Յովհաննէսի քահանայութեան 50-ամեակը, որ Ախալքալաքի թէ հայ և թէ վրացի հասարակութիւնը փառաւոր կերպով տօնեց. 1915 թ. հոկտ. 28-ին վախճանուեց Տէր-Յովհաննէսը և թաղուեց մեծ հանդէսով իր կառուցած ս. Կարապետ եկեղեցու գաւթում։ Թաղմանը ներկայ էին Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը և շրջակայ գիւղերի հայ ու վրացի թէ հոգևորականութիւնը և թէ հասարակութիւնը։ Կ. Բ. Ը-թեան Խորհուրդը յանձն առաւ թաղման հոգսերը։

— Դիլիջանում բացուել է մի նոր որբանոց ևս, որը համարւում է 9-րդը։ Այդ որբանոցում բերուել են Պարսկաստանից 58 հոգի։ Նոյն տեղ սպասւում են Վանից 70 հոգի որբ ևս։

— Կ. Հ. Բ. Ը-թեան և Հ. Կ. Կոմիտէն ստացել են Կովկասի փոխարքայի դիւանատնից գաղթականների համար տաք շորեր պատրաստելու համար 75,000 ր.։

— Կ. Հ. Բ. Ընկ. գնել է 8 վագոն ալիւր, որի մի մասը ուղարկուելու է որբանոցներին, իսկ միւս մասը տրուելու է այն հայ գիւղերին, ուր սովը ընդունել է աւելի սուր կերպարանք։

— Կ. Հ. Բ. Ընկ. լազարէթում յուն. 2-ին տեղի ունեցաւ տօնածառ մի փոքրիկ ներկայացումով, ուր հիւանդներից մէկը կարդաց ոտանաւոր։

Տօնածառը անցաւ շատ ուրախ, ուր ներկայ էր և գեներալ Մաղրիկին։ Տօնածառից յետոյ հիւանդներին բաժանուեց քաղցրաւենիք։ Տօնածառին նուագում էր սիրողների նուագախումբը։ Թաթախման գիշերը հայ զինուորների համար պատրաստուած էր շքեղ ընթրիք։

— Ծննդեան տօներին Կ. Հ. Բ. Ընկերութիւնը բաժանեց տեղական չքաւորներին և գաղթականներին 1,200 րուբլի։

Ընկ. Կենտրոնը դեկտ. ընթացքում դրամով մուտք ունեցել է 2209 ր. 56 կ., ելք 21,331 ր. 03 կ.

## ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը «Անահիտեան» գրադարաններից երկուսը յատկացրել է օգտակար գիտելիքներ տարածող ընկերութեանը Հաւլաբարի գրադարանի համար, իսկ մէկը Սաչխերէթի դպրոցին։

Կ. Հ. Բ. Ը-թեան գրադարանը ստացել է կովկասագիտական և ընթացիկ գրականութիւնից բաւականին թւով ռուսերէն և հայերէն գրքեր, որոնց ցուցակները կազմում են ընդհանուր գրացուցակին կցելու համար։

---

Հայկ. Կենտր. Կոմիտ. 1916 թ. յունուարի 4-ի որոշումները։

— Վանից ուղարկուող 63 որբը տեղաւորել Դիլիջանի և Ղարաքիլիսայի որբանոցներում։

— Յատկացնել 15,000 ր. Դիլիջանի որբանոցների սննդի և շորերի համար։

— Սանահնի որբանոցին տալ ծախսերի համար 6,000 ր.։

— Հ. Կ. Կ.ի որբանոցներում խնամուող որբերի ցուցակը տպել «Համբաւաբերում» և հրատարակել առանձին գրքով։

— Գանձակի շրջանում ապրող գաղթական քահանաներին Կ. Հ. Բ. Ը. Գանձակի վարչութեան միջոցով զգեստ և անկողին տալ։

— Ընդունել փախստականների գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանի առաջարկը գաղթականների միօրեայ ժողովրդագրի մասին։

— Կովկ. գլխաւոր կոմիտէին, ի պատասխան նրա հարցագրի, յայտնել, թէ յարգուելու արժանի է Կ. Հ. Բ. Ը. Ախալքալաքի ճիւղի վարչութեան խնդիրը, որով նա խնդրում է գլխ. կոմ.-ից 2500 ր. նպաստ Ախալքալաքի ծխական դպրոցին կից տանձոտցի երեխաների համար բացուած երեք դասարանի ծախսերը ծածկելու համար։

— Ընդունել գաղթականական դպրոցների ներկայացրած 26,085 ր. նախահաշիւը։

## ՆՈՒԷՐ ԵՒ ՆՊԱՍՏ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է Մայկոպի ճիւղի վարչութիւնից «Մի բաժակ թէյից» գոյացած 250 ր.

— Վլադիկաւկազի ճիւղի Վարչութիւնից 122 ր. ժողովրդական դրօշակներից գոյացած 2222 ր. արդիւնքի մնացորդը։

— Վարդանոյշ Դլաձեանից և տիկին Ասլանեանից 10-ական ր.

— Գաղթականների համար տաք շորեր և անկողիններ գնելու համար Կովկ. գլխ. կոմիտէից 75,000 ր.

— Լոնդոնից. Լոնդոնի լորդ-մէր (քաղաքագլուխ) Միստըր Ֆոնտը հեռագրով Վոլժսկո-Կամսկի բանկի միջոցով փոխադրել է պ. Ս. Յարութիւնեանին հայ գաղթականների օգտին Հայկական Կենտրոնական Կոմիտէին յանձնելու համար 80,750 ր.։

Բոզալի Հայ Կանանց Ընկերութիւնից 765 ր.։

Արդահանից պ. Հրանտ Մինասեանից 9 ր. Հայկ. Կենտրոն. Կոմիտէն «Кавк.» լրագրի միջոցով զանազան անձերից նուիրուած 202 ր. 50 կոպ.։

— Մի ոմնից 5 ր. Ս. Բաշինջաղեանից ի յիշատակ իր քոյր Արուսեակի 10 ր. Անդիժանից պ. Գերասիմ Ջալալեան Ալթունեանից մի ներկայացումից գոյացած զուտ արդիւնքը 309 ր.

— «Համբաւաբերի» խմբագրութիւնը ստացաւ Թիֆլիսի 3րդ գիմնազիայի եօթերորդ և երկրորդ դասարանների աշակերտներից յօգուտ գաղթական որբերի 41 ր. 35 կոպ.։ Այս գումարը յանձնեց Կ. Հ. Բ. Ընկերութեան։

Միխայլովոյից 282-րդ Ուֆիմի խմբի սպայ Գր. Յակոբեանի Ռուբէն և Ռուզան որդիներից 10 ր.։

---

# Արտաքին տեսութիւն

Քաղաքական աշխարհի բոլոր փոքր ի շատէ աչքի ընկնող դէպքերը ներկայումս ուղղակի կամ անուղղակի կերպով կապուած են համաշխարհային պատերազմի հետ։ Այս երևոյթն ընդհանուր է թէ՛ պատերազմող և թէ՛ հարևան չէզոք պետութեանց համար։ Տարբերութիւնը միայն այն է, որ մի պետութեան մէջ պատերազմի ազդեցութիւնը աւելի մեծ չափով է զգացւում, քան թէ մի ուրիշի մէջ։

Այս տեսակէտից առաջին տեղը բռնում է Անգլիան։ Պատմական աւանդութիւններին կառչած այս պետութեան մէջ պատերազմն առաջ է բերել այնպիսի խոր փոփոխութիւններ, որոնց մասին դեռ երկու տարի առաջ երազել անգամ չէին կարող ոչ աւանդական տորին, ոչ շրջահայեաց ազատամիտը և ոչ իսկ նոր կարգերի տենչացող ընկերվարականը։ Ո՞վ կարող էր երկու տարի առաջ մտածել, թէ այսօր Ասկուիտն ու Բալֆուրը, Լօյդ Ջօրջն ու Կէրսընը մի ամբողջ շարք հակառնեայ պետական գործիչների հետ միասին պարլամենտի ազատամիտ մեծամասնութեան բարե-

թէև միշտ անյաջողութեան են հանդիպում։ Օլթիի գծի վրայ անցեալ շաբաթ սկսուած կռիւները վճռական ելքի չհանգան։ Առաջին ընդհարումներից յետոյ երկու կողմերն էլ ամրացել են իրենց դիրքերում և սպասում են, որ հարևան գծերի վրայ դէպքերը հասունանան... Գլխաւոր կռիւները այս շաբթուայ ընթացքում կենտրոնացած էին Սարիղամիշի գծի վրայ։ Ռուսներին, հարկաւ, ոչ առանց դժուարութեան յաջողւում է յետ մղել թշնամուն Զիւինի սարոտներից հարաւ-արևմուտք։ Սիտավուտ գիւղում (Խորասանից 17 վերստ դէպի հիւսիս-արևմուտք), ուր, ինչպէս երևում է, թշնամին զէնքի մեծ պաշար է եղել ամբարած, մերոնց յաջողւում է խլել մի միլիոնաչափ փամփուշտ և թնդանօթի մի քանի հազար գնդակ։ Այս վերջին շաբթուայ կռիւների ժամանակ ռուսները թուրքերից խլել են 12 թնդանօթ, 9 գնդացիր և գերել են 50 սպայ 4-5 հարիւր զինուորի հետ միասին։ Մնացած գծերի վրայ թեթև ընդհարումներ են տեղի ունենում հետախոյզ խմբերի միջև, որոնց մէջ, ըստ մեր մասնաւոր տեղեկութիւնների, հայ կամաւորական գնդերը աչքի ընկնող դեր են կատարում։

Բոլոր նշաններից երևում է, որ Մահմուդ Քիամիլ փաշան, այս ճակատի վրայ գործող թուրքական III բանակի հրամանատարը, օգնական զօրք է ստացել։ Պէտք է յուսալ, որ ռուսները առանց ժամանակ կորցնելու մաս-մաս կը ջարդեն այս բանակը և չեն թոյլ տայ, որ նա, Գալիպոլիից սպասուող զօրքերով այնքան ուժեղանայ, որ սկսի սպառնալ Կովկասին։

բ. Պարսկական ճակատ։ Վերջին շաբթում այս գծի վրայ կատարուած նշանաւոր գործն է Կանգաւար լեռնանցքի և համանուն քաղաքի գրաւումը։ Քիրմանշահից մօտ 80 վերստ և Բաղդադից մօտ 350 վերստ հեռու գտնուող այս քաղաքումն էր, որ օգոստոսին թուրք-գերմանական գործակալները յարձակուեցին ռուսաց և անգլիացոց հիւպատոսների վրայ։ Նրանց ընկերի թիւը այժմ մէկով էլ պակսեց։

գ. Միջագետքի ճակատ։ Անգլիացիներն անընդհատ առաջ են շարժւում դէպի Բաղդադ։ դեկտ. 25-ի կռուից յետոյ գեներալ Էլմէրը դեկտ. 31-ին նորից ջարդ է տալիս թուրքերին Կուտ-Ամարից 25 վերստ դէպի արևելք և քշում նրանց դէպի Բաղդադ։ Այսպիսով դեկտ. կէսերին գեներալ Տաունզէնդի կրած պարտութեան հետևանքները կարելի է ջնջած համարել։ Անգլիական առաջապահ գնդերն այժմ Բաղդադից մօտ 150 վերստի վրայ են գտնւում։

դ. Եգիպտական ճակատ։ Եգիպտոսը վերադարձնելու համար թուրքերը, ինչպէս երևում է, խիստ մեծ պատրաստութիւններ են տեսնում։ Ըստ մասնաւոր տեղեկութիւնների՝ նրանք մտադիր են Ջեմալ փաշայի տրամադրութեան տակ դնել 350,000-անոց մի բանակ, որ պէտք է գերակշռի Եգիպտոսի անգլիական զօրքին։ Թուրքական երկաթուղին հասել է մինչև Բերսաբա, որ Սուէզի ջրանցքից 200 վերստ է միայն հեռու։ Այդ գծով դէպի Եգիպտոս տեղափոխուած թուրքական զօրքերի թիւը ներկայումս հասնում է 100,000-ի՝ 250 թնդանօթով։ Գալիպոլու և բուլղարական սահմանագլխի զօրքերի ազատուելուց յետոյ՝ թուրքերը կարծում են, որ եգիպտական արշաւազօրքը շուտով լիովին պատրաստ կլինի վճռական գործողութիւնների դիմելու համար։ Ըստ մեր մասնաւոր տեղեկութիւնների՝ անգլիացիք շատ չեն մտահոգւում այս պատրաստութիւններով, որովհետև նրանց եգիպտական բանակը ներկայումս 250,000 հոգու է հասնում, իսկ մօտիկ ապագայում Գալիպոլու զօրքերով այդ բանակը աւելի ևս պէտք է ուժեղանայ։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

ա. Չեռնոգորական ճակատ. Չեռնոգորական զօրքը հայրենի հողի վրայ իր վերջին օրերն է ապրում։ Արևելեան, հիւսիսային և արևմտեան կողմերից շրջապատուած աւստրօ-գերմանական գերազանց ուժերով նա այլ բան չի կարող անել, բայց եթէ Սկիւտարիի վրայով նահանջել դէպի Ալբանիա։ Եւ դեռ հարց է՝ կըյաջողուի՞ նրան այս նահանջը, որովհետև միջին Ալբանիայով դէպի Դուրացցօ շարժուող բուլղարական զօրքը կարող է բռնել նրա թիկունքը և կտրել նրա նահանջի ճանապարհը... Չեռնոգորական հերոսական զօրքն այս անել վիճակին հասցնողը եղաւ Չեռնոգորիայի արևմտեան պատնէշը հանդիսացող Լովչէնի ամրութեանց անկումը։ 7500 ոտնաչափ բարձրութիւն ունեցող այս լեռը, որ իշխում է Կատարրօյի ծովախորշին և մշտական սպառնալիք հանդիսանում այնտեղ պատսպարուած աւստրիական նաւատորմի համար՝ անցաւ աւստրիացիների ձեռքը, առանց որ զինակիցները և մանաւորապէս իտալացիները մատը մատին տային նրա պաշտպանութեան համար... Այս տարօրինակ անտարբերութիւնը այժմս ահագին աղմուկ է հանել դաշնակից երկրներում. բայց ինչ օգուտ...

բ. Սալոնիկի ճակատ։ Այս ճակատի վրայ երկուստեք դեռ շարունակւում են նախապատրաստական աշխատանքները։ Բոլոր նշաններից երևում է, որ մենք կարևոր գործողութիւնների նախօրեակին ենք կանգնած։

### ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

ա. Արևելեան ճակատ։ Բուկովինայի և Գալիցիայի կռիւները կարելի է այժմս վերջացած համարել։ Այդ կռիւները վճռական ճակատամարտի չվերածուեցին, ինչպէս սպասւում էր ամենուրեք, այլ դարձան «կարճ և ուժեղ հարուած» թշնամուն։ Նրանց հետևանքով Ֆրիդրիխ Լէօպոլդի երեք բանակներից ընկան 25-30 հազար սպանուած, վիրաւոր և մօտ 10 հազար գերի։ Բացի սրանից՝ 100 վերստի վրայ առաջ անցան հարաւում, Չեռնովիցի մօտերքը՝ 25 վերստ, իսկ հիւսիսային կողմերում 12-15 վերստ դէպի թշնամու գլխաւոր ամրութիւնները։ Ներկայումս ամբողջ ճակատի վրայ տեղի ունեն միայն հետախոյզ խմբերի թեթև ընդհարումներ և սաւառնակների արշաւանքներ։

բ. Արևմտեան ճակատ։ Շարունակւում է սովորական դիրքերի թնդանօթամարտը Արտուայում, Արգոններում, Վոգեզներում և մանաւանդ Շամպանիայում։

գ. Աւստրա-Իտալական ճակատ։ Սովորական թնդանօթամարտ բոլոր գծերի վրայ։

### ԾՈՎԵՐԻ ՎՐԱՅ

Այս շաբաթ դաշնակիցներից միայն անգլիացիք մի շոգենաւի կորուստ են ունեցել (Մալթայի մօտ)։ Թշնամիներից թուրքերը կորցրել են մի մեծ շոգենաւ (Սև ծովում) և աւստրիացիք մի յածանաւ (Կատարրօյի մօտ)։ Առաջինը խորտակել են ռուսները, իսկ երկրորդը՝ ֆրանսիացիք։

Ա. Ջամալեան

6. Յունուարի

# Քաղաքական լուրեր

### ՀԱՍԱՆ-ՂԱԼԱՅԻ ԱՌՈՒՄԸ

Գերագոյն հրամանատարի շտաբը երէկ հաղորդեց, որ մեր զօրքը վերցրեց Հասան-Ղալան և թշնամուն քշեց մինչև Էրզրումի ամրոցի մարտկոցները, ջարդելով և գերի առնելով 1500 զինուոր, գրաւելով շատ զէնք, ռազմամթերք և վրանների մեծ քանակ։ Թուրքերը բոլոր ուղղութիւններով նահանջում են դէպի Էրզրում, թողնելով մեր ձեռքում թնդանօթային և պարէնաւորման պահեստներ և վառելիքի մեծամեծ պաշար։ Ամենուրեք թափուած են փամփուշտներ, զէնքեր և յոգնած ու ետ մնացած թուրք զինուորներ։

—«Ֆիրման—Ֆիրմանի կաբինէտը շահի հաճութեամբ սկըզբունքով վճռեց դաշն կապել Ռուսաստանի և Անգլիայի հետ։

—«Рус. Слово» հաղորդում է, թէ ռուսական և անգլիական դեսպանները Ֆիրման Ֆիրմանի հրաւէրով եկան պալատ, ուր

Նրանց ծանօթացրին այն գրաւոր պայմաններին, որոնցով Պարսկաստանը պատրաստ է դաշն կապել Ռուսաստանի և Անգլիայի հետ։

— «Times»-ը հաղորդում է, որ չինական կառավարութիւնը վճռել է մտցնել կայսրութեան մէջ ընդհանուր պարտադիր զինուորակոչ։ Օրէնքը ամբողջապէս կիրագործուի 10 տարուայ ընթացքում։

— Ստոկհոլմում լուր է ստացուած Բերլինից Վիլհելմի հիւանդութեան սուր կերպարանք ստանալու մասին։ Ճակատից Բերլին են կանչուած երկու յայտնի բժիշկ։

— «Рус. Вѣд.» հեռագրում են Կոպենհագենից,— Սոֆիայից հաղորդում են Բերլին, որ դաշնակիցները սկսեցին իրենց զօրքը հանել... Այս անցքը կազդէ Յունաստանի ներքին քաղաքականութեան վրայ։ Սոֆիայում կարծում են, որ Կոնստանդին թագաւորը իր կառավարութեան հետ կը գնայ երկրի խորքը և ամեն կերպ կաշխատի հետևել չէզոքութեան քաղաքականութեան։

— «Рус. Вѣд.» հաղորդում է. «Պոլսում տրամադրութիւնը անհանգիստ է։ Կարիքը աննկարագրելի է։ Գերմանիայի հետ հաղորդակցութիւն բացուելուց յետոյ արտադրութիւնների գները անչափ բարձրացել են, Թալաաթ բէյը, յենուելով Սուլթանի վրայ և կռուելով Տաճկաստանի գերմանացման դէմ, բացարձակ դուրս է գալիս Էնուէր փաշայի դէմ։

— Այս օրերս խուզարկութիւնից յետոյ ձերբակալուած Մեսկոտինի և այլոց գործը քննելու համար յանձնւում է Պետրոգրադի ժանդարմային վարչութեանը։ Ներքին գործոց նախարարի օգնական Բէլիցկու կարգադրութեամբ Վոդովոզովը, Գիգետին և Բրամսոնը ազատուած են, միւսները դատի են յանձնւում պատժագրքի 102 յօդուածով։

— Վիէննայից Կոպենհագէնում յունուարի 5-ին ստացուել է աւստրիական կառավարութեան հետևեալ պաշտօնական հաղորդագրութիւնը. «Չեռնոգորիայի թագաւորը և կառավարութիւնը խնդրեցին սկսել հաշտութեան բանակցութիւններ։ Աւստրիական կառավարութիւնը պատասխանեց, որ բանակցութիւնները հնարաւոր են այն պայմանով միայն, որ չեռնոգորցիք վայր դնեն զէնքը։ Երէկ այդ պայմանն ընդունուեց, որի իրագործումից յետոյ կըսկսուեն հաշտութեան բանակցութիւնները։ (Кавк. Сл.)

—Կոպենհագենից յունուարի 6-ին հեռագրում են. «Արժանահաւատ աղբիւրից «Նէյէ-Ֆրէյէ-Պրեսսէ» հաղորդում է մի քանի մանրամասնութիւններ Չեռնոգորիայի անձնատուր լինելու մասին։ Աւստրո գերմանացիք պահանջում են, որ, բացի ընդհանուր զինաթափից, չեռնոգորցիք յանձնեն և այն ժառանգական զէնքը, որ ամեն մի չեռնոգորցի կրում է իր վրայ։ Յաղթողները պահանջում են, որ իրենց յանձնուին բոլոր քաղաքներն ու գիւղերը, նոյնպէս և ճանապարհները, որոնց թւում և երկաթուղիները։ Զէնք կրելու ընդունակ բոլոր տղամարդիկ, նոյնիսկ հասակն անցկացրածները, կաքսորուեն որոշ շրջաններ։ Կանայք չեն ենթարկւում աքսորի։

— Աթէնքից հաղորդում են. «Չեռնագորական կառավարութիւնը թողեց Ցետինէն։ Աթոռանիստը տեղափոխուած է Պոդգորիցա»։

---

# Գեղարուեստ

---

## ՄԵԶ ՉԵՆ ՍԻՐՈՒՄ

### I

Գարուն էր։ Թիֆլիսի Վերա կոչուած քաղաքամասի պարտէզներից մէկում հայ մտաւորականների նախաձեռնութեամբ խնճոյք էր սարքուել ի պատիւ մի օտարական յայտնի գերասանի։ Ճաշկերոյթը վերջանալուց յետոյ, երբ բոլորեքեան զանազան խմբերի բաժանուած, մի տեղ տաք տաք վէճի էին բռնուել, միւս տեղ գրկախառնւում ու համբուրւում էին—մի ուրիշ անկիւնում էլ աղմուկ ու զոռում գոչում էր տիրում, միախառնուելով զուռնայի գիլ ձայնի հետ։ Այնտեղ ջահէլները ձեռքերի վրայ էին բարձրացրել գերասանին և միաձայն վճռել էին պտտցնել ամբողջ պարտէզում։ Նրանք թռչկոտելով ու գլխարկները օդի մէջ շպրտելով եկան հասան մի փոքրիկ կլոր հրապարակ, ուր կենտրոնում հինաւուրց մի թթենի էր բարձրանում։ Այնտեղ զուռնաչիները ու թմբկահարը պարելու եղանակ նուագեցին, ու երիտասարդները՝ գերասանին առժամանակ ցած իջեցնելով ուսերից, սկսեցին միասին պարել, իրար բռնելով ու վայր գլորելով։ Օտարական արուեստաւորը՝ ջարդուած ու նեղացած, աղերսում էր իտալական լեզուով խնայել իր թոյլ առողջութիւնը։ Խեղճի կողքերը բոլորովին ջարդել, ճմռել էին և կերած խմածը քթից հանել։ Նրա լեզուն ոչ ոք չէր հասկանում։ Եթէ հասկանային էլ, մի և նոյն է, ոգևորուած երիտասարդների ձեռքից նրան չէր յաջողուի ազատուել։

Վճռուած էր օտարական արուեստաւորին պատուել, ինչպէս հարկն է, որպէս զի Կովկասը ամօթով չմնայ։

Գերասանը աշխատում էր գտնել յարմար րոպէ մի կերպ «ծլկուելու», նոյնիսկ մի քանի անգամ փորձ էլ արաւ, բայց անօգուտ։ Նա չէր կարողանում պարզ հասկանալ, թէ հիւրընկալների այս առատաճան անզուսպ ոգևորութիւնը ինչ պատճառներից էր առաջացած։ Արդեօք տաղանդի երկրպագունե՞ր են սրանք, որ իրանց յափշտակութիւնը այսպիսի վայրենի ձևով են արտայայտում, թէ կայ մի այլ դրդապատճառ, որ յատուկ է հայ ազգին. Նա չէր ըմբռնում։ Մինչդեռ գերասանը մոլորուած նայում էր իր շուրջը և անհամբեր սպասում իր անտրեպրենեօրին. գլուխը ազատելու համար, վերջինը առանձնացել էր իր հասակակիցների հետ մի ծածկուած անկիւն, ուր, նստած կլոր սեղանի շուրջը, շարունակում էին խմել։

Նա Թիֆլիսում շատ յայտնի անձնաւորութիւն էր, իբրև փորձուած, խելօք և ճարպիկ բեմական գործիչ։ Հազիւ թէ գտնուէր մի այլ ռուս մարդ, որ նրա չափ ի մօտոյ ճանաչէր կովկասեան բոլոր ազգութիւնները։

Երբ կենացները հասան, և իրար շռայլած շողոքորթութիւններից բէզարեցին, առաջ եկաւ, ինչպէս միշտ, անխուսափելի վէճ։

—Я прямая русская натура,—ասաց, ի միջի, այլոց անտրեպրենեօրը՝ դիմելով իր սեղանակիցներին,— ուղղակի առանց քաշուելու ձեր երեսին ասում եմ, որ համակրելի ազգ չէք։

—Իրաւացի չէք, Իվան Պետրովիչ,— բողոքեց մէկը, որ ճանաչուած էր իբրև թատերասէր և ազդեցիկ մարդ։ Նա բանկիր էր։

—Իրաւացի չէք նախ և առաջ այն պատճառով, որ մենք հայերս լաւութիւն շատ ենք արել ձեզ, իսկ վատութիւն՝ երբէք։ Ես նոյնպէս առանց քաշուելու կասեմ ձեր երեսին, որ դուք ապերախտ և անաղուհաց մարդ էք։ Մի մոռանաք, որ մօտիկ անցեալում մեր բանկը հանեց ձեզ անելանելի դրութիւնից, երբ ձեր արիւնակիցները ուղղակի խեղդում էին ձեզ։

Նա ամբողջ նախադասութիւնը արտասանեց առանց շունչ առնելու, ոգևորուած ու վրդովուած, այնպէս որ՝ դէմքը կապտելու չափ կարմրել էր։

—Յիշում էք,— մէջ մտաւ լուրջ ու անշարժ դէմքով մի մարդ, որ իր հարստութեամբ ու փարթամ կեանքով յայտնի էր ամենքին,— Իվան Պետրովիչ, գերասան Ադամեանի պատմութիւնը, երբ դուք խոստացիք ինձ ու արտասուախառն աչքերով բացականչեցիք «Կեանքումս չեմ մոռանայ ձեր արած լաւութիւնը»։ Իսկ այսօր ամեն ինչ ոտնտակ էք անում... Ապերախտ։

Այս ասելով վեր կացաւ տեղից, թքեց մի կողմ ու նորից նստեց աթոռի վրա։ Նա Թիֆլիսում հռչակուած թատրոնական գործիչ ու հիւրասէր անձն էր։ Ունէր իր սեփական տան մէջ հիանալի բեմ, որից օգտւում էին միանգամայն ձրի, բոլոր Թիֆլիս այցելող օտար արուեստաւորները՝ գերասաններ, երաժիշտներ

և այլն։ Նրա տունը նման էր շքեղ հիւրանոցի, բոլոր յարմարութիւններով և դրուած էր գեղարուեստի ներկայացուցիչների տրամադրութեան տակ։ Մեկենասի անունն էր Մունթու։

Ադամեանի պատմութիւնը այս էր, որ նա պէտք է ներկայացնէր «Ուրիէլ Ակոստա» պիէսը և արդէն վարձել էր թատրոնը ու ցրել տոմսակները։

Իվան Պետրովիչը պայմանաւորուել էր պատահմամբ Թիֆլիսի վրայով անցնող մի յայտնի ջութակահարի հետ մի համերգ տալու և վարձը, որ բաւական խոշոր գումար էր, իսկոյն եթ վճարել էր։ Այդ գումարը նա մուրհակով փոխ էր առել իր հայ ծանօթներից մէկից։ Բաղդի բերմամբ թէ Ադամեանի ներկայացումը և թէ ջութակահարի համերգը մի և նոյն երեկոյ էին գալիս, և այս պատճառով Իվան Պետրովիչը թուքը ցամաքած դէս ու դէն էր վազել, ամէն տեսակ միջոցների էր դիմել Ադամեանի ձեռքից թատրոնը խլելու համար։ Երբ նրա ջանքերը ոչ մի արդիւնք չտուեցին, նա դիմել էր Մունթուի օգնութեան։ Վերջինը իր դիրքի· կապերի և ազդեցութեանշնորհիւ այնպէս սարքեց բանը, որ Ադամեանի ձեռքից թատրոնը խլեցին։

—Անիծուի, ով մոռանայ,— պատասխանեց Իվան Պետրովիչը սառնասրտութեամբ, —Ո՞վ է մոռանում, ես, քաւ լիցի։ Իրաւացի չէ նա, ով ինձ «ապերախտ» ածականն է տալիս։ Լաւ հասկացէք, թէ ինչ եմ ասում.... Թէպէտ կեանքումս հայերից միշտ ունեցել եմ օգուտ թէ նիւթական և թէ բարոյական, սակայն պնդում եմ, որ ձեր ազգը անհամակրելի է։

Նա «պնդում եմ» բառն արտասանելու միջոցին բռունցքը խփեց սեղանին։ Բարձրացաւ ընդհանուր ծիծաղ, որի մէջ զգացւում էր հեգնութիւն։

—Թքել եմ ձեր ծիծաղի վրայ,— շարունակեց Իվան Պետրովիչը անտարբերութեամբ, որ յատուկ է հին դերասաններին, —ես փաստից եմ խօսում... Շատ հայ դերասաններ են ինձ մօտ ծառայել, որոնցից անչափ գոհ եմ եղել իրանց կոռեկտութեան ու բարեխղճութեան համար։ Բայց ուշադրութեան արժանի է այն հանգամանքը, որ նրանցից ամէն մէկը միշտ միևնոյն պայմանն է կապել հետս, այն է, որ բացի իրանից ոչ մի հայ դերասան չընդունեմ խմբիս մէջ.... Ասացէք՝ ինչ կայ այստեղ համակրելի, փո՜ւ։

—Դերասանները հէչ, —բացականչեց մի երիտասարդ, —եթէ կարող էք՝ լուրջ օրինակներ բերեցէք։

—Շատ վատ հարբած է անիծածը, փնթփնթաց մի հասակաւոր վաճառական, որ ամէն մի հասարակական խնճոյքի մասնակից էր լինում։

—Լուրջ օրինա՞կ, համեցէք, —պատասխանեց Իվան Պետրովիչը, —յիշում էք.....

—Ներեցէք, ներեցէք,—մէջ մտաւ մի բարձրաստիճան ռուս աստիճանաւոր, որի գլուխը կոնեակից բաւականաչափ տաքացել էր, —հայերին ոչ ոք ինձ նման չի ճանաչում։ Ինձ մօտ աստիճանաւորներ, ինչպէս լաւ յայտնի է ձեզ, ամէն ազգից էլ կան։ Հայի նման հաւատարիմ, ճշտապահ ու աշխատասէր ծառայող Աստուած չի ստեղծել.... Ամէն ինչ հաւատում եմ նրանց.... Բայց...

—Բայց ինչ, —անհամբերութեամբ արտասանեց վաճառականը։

—Բայց այն, որ այդ հայ ծառայողները իրար ատելով ատում են... Սակայն՝ չմոռանաք, որ նրանք միւսների հետ վերին աստիճան սիրալիր են.... Մի խօսքով՝ տարօրինակ բան է.... Երդւում եմ ազնուութեամբս, որ հայ ծառայողներին բարձր եմ գնահատում, բայց և այնպէս՝ նրանց չեմ կարող ոչ համակրել, ոչ յարգել և ոչ սիրել։

—Տուեցէք ձեր ձեռքը, —շտապով արտասանեց Իվան Պետրովիչը և յետոյ, դիմելով Մունթուին, —Իսկ Ադամեանի պատմութիւնը, որ երեսովս տուեցիք, ձեզ իբրև մարդու աչքումս մի երկու աստիճան ցած չիջեցրեց։

Մունթուն շտապով վեր կացաւ տեղից՝ զայրոյթից խեղդուելով, ուզեց մի խիստ խօսք ասել և յանկարծ «օղու տակառ» արտասանելով բռնեց վաճառականի թևից ու հեռացաւ։

Անտրեպրենեօրը բաժակը դատարկելով աղաղակեց գնացողների ետևից «Ձեր կենացը, եթովպացի» (վայրենի)։

II

Իվան Պետրովիչի գործած «Եթովպացի» բառը պատահական չէր։

Դեռ ճաշի սկզբին, երբ սեղանի կենտրոնում նստած էին Մունթուն, դերասանն ու անտրեպրենեօրը, օտարականը հետաքրքրուեց իմանալ, թէ արդեօք հիւրերի թւում չկա՞ն հայ դերասաններ։ Մունթուն արհամարհանքով տուեց բացասական պատասխան։

—Ինչո՞ւ։

—Նրանցից հեռու պէտք է փախչել... Ես նրանց շէմքից ներս չեմ թողնում։

Մի քիչ յետոյ խօսակցութեան միջոցին արուեստաւորը գըրպանից հանելով փոքրիկ յուշատետրը, ցանկացաւ մի քանի հայերէն բառ մտցնել։ Բնականաբար դիմեց Մունթուին, իբրև կողքին նստողին։

—Pardon ! je ne parle pas arménien *)։

—Բայց, կարծեմ, դուք հայ էք,—քաշուելով հարցրեց դերասանը։

—Պատահմամբ հայ եմ ծնուել,—ուզեց սրախօսել Մունթուն։

Արուեստաւորը յարմար բոպէին փսփսաց Իվան Պետրովիչի ականջին «բանից դուրս է գալիս, որ ինչ որ եթովպացու կողքին եմ նստած»։

III

—Տէրութիւնը ինքը վկայում է.... ոգևորութեամբ սկսեց խօսել մի երիտասարդ հայ ազնուական։

Աստիճանաւորը թոյլ չտուեց աւարտել խօսքը։

—Մի բոպէ, մի բոպէ, ի սէր Քրիստոսի,—աղաղակեց նա, բաժակը զարկելով անտրեպրենեօրի բաժակին ու յանկարծ դադարելով,—ձեր իշխան №-ին խօ ամէնքդ լաւ ճանաչում էք... Աստուած է վկայ, որ նա ռուս կառավարութեան համար մի անգնահատելի գիւտ է...Բայց...արի ու տես...Մի անգամ ներկայ էի նրա առանձնասենեակում այսպիսի տեսարանի։ Երբ ներս էին գալի զանազան գործերով ռուս, վրացի, թուրք, հրէայ պաշտօնեաները, նորին պայծառափայլութիւնը ընդունում էր սիրալիր, առաջարկում էր նստել և այլն, իսկ երբ հայ պաշտօնեաներ էին դիմում միևնոյն տեսակ գործերով, նա արդէն մտնում էր իր դերի մէջ, վարւում էր նրանց հետ կոպտաբար, անքաղաքավարի։ Բայց ամէնանշանաւորն այն է, որ աշխատում էր ցոյց տալ ինձ իր ազգատեցութիւնը... Ասացէք, ի սէր Աստուծոյ, ինչ կարող է լինել աւելի զզուելի։

—Հա՜, հա՜, հա՜, —բարձրաձայն ծիծաղեց Իվան Պետրովիչը՝ որի լեզուն արդէն հազիւ պտտւում էր բերանի մէջ։ —Աւելի լաւն ասեմ, սիրելի բարեկամներս, թանկագին բարեկամներս...— Նա որ առաջին անգամ ներկայացաւ կառավարչապետին, այսպիսի ա ն մ ա հ ա կ ա ն բան ասաց. «Ճշմարիտ է, հայ եմ, բայց ոչ մի կապ ու յարաբերութիւն չունիմ զանազան եանցների հետ»։ .... Սարուկներ էք, բարեկամներս, ձեզ սիրել չի կարելի.....

Այս ասելով գետնով տուեց դատարկ շիշը ու, փաթաթուելով ազնուականի վզին, համբոյրներով ծածկեց նրա դէմքը։ Վերջը արտասուելով ու ի սրտէ հեկեկալով հազիւ արտասանեց «Չկայ ձեր մէջ ազգային արժանապատուութեան զգացմունք, ձեզ սիրել անկարելի է»։

Ներկայ եղող հայերը, որոնք վէճի սկզբում ոգևորուած հակաճառում էին, այժմ պապանձուած աշխատում էին իրար երեսի չնայել ու մի կերպ գլուխները ազատել։

—Անկեղծ շնորհակալ եմ ձեզանից, յարգելի պարոններ,—

* Ներողութիւն, ես հայերէն չեմ խօսում։

գողգոջուն ու յուզուած ձայնով խօսեց մի յայտնի հայ ուսուցիչ, որ շարունակ լուռ լսում էր,— դուք խօսում էք անկեղծ.... Ինչ որ ասացիք՝ զուտ ճշմարտութիւն է.... Մենք այլասերուած ենք... Մեր մէջ չկայ ինքնաճանաչութիւն, ինքնասիրութիւն, ազգային արժանապատուութիւն, միաբանութիւն, համերաշխութիւն.... Իրաւունք ունիք մեզ չսիրելու.... Մենք արհամարհում ենք մեր լեզուն, մեր գրականութիւնը, պատմութիւնը, եկեղեցին, ամեն ինչ, ամեն ինչ.... Դուք ինչպէս կարող էք մեզ յարգել ու սիրել, երբ մենք ինքներս չենք յարգում ու սիրում մեզ...

Ուսուցչի ձայնը կտրուեց։ Նա հեկեկալով ընկաւ աթոռի վրայ ու գլուխը ափերի մէջ առնելով դրեց սեղանի վրայ։ Գուցէ նա էլ անկեղծ չխօսէր, եթէ չլինէր օրհնեալ գինու ազդեցութիւնը։

Ջահիլները գերասանին աջ ու ձախ քաշքշելով, զուռնայի ուղեկցութեամբ մօտեցան այգուն։

—Signor Giovanni, mi liberi per l'amor di Dio.*),—գոչեց գերասանը աղերսելով։

Իվան Պետրովիչը ձգուած երկար նստարանի վրայ քնած էր խաղաղ ու անվրդով։

Մունթոնը, վիրաւորուած ու զայրացած, վաղուց նստել էր իր սեփական կառքը ու վաճառականի հետ միասին վերադարձել տուն։

Բայց նրա դիտաւորութիւնը այդպէս չէր։ Նա գերասանին ու անտրեպրենեօրին իր կառքով էր բերել պարտէզը և ինքն էլ պէտք է վերադարձնէր նրանց հիւրանոցը, ուր ապրում էր արուեստաւորը։

Գ. Բաշինջաղեան

## ՀԱՅ ՆԿԱՐԻՉՆԵՐԸ ԹԻՖԼԻՍԻ ՊԱՏԿԵՐԱՀԱՆԴԷՍՈՒՄ

«Գեղարուեստ խրախուսող Կովկասեան Ընկերութեան կազմած այս տարուայ պատկերահանդիսին հայ նկարիչներից մասնակցել էին Բաշինջաղեան, Թէրլէմէզեան, Խաչատրեան, Գ. Խունունց և մի քանի այլ նկարիչներ։

### ԲԱՇԻՆՋԱՂԵԱՆ

Բաշինջաղեանը բնութեան մեղմ տպաւորութիւնների նկարիչ է. այդ մեղմութիւնը պատկերացնելու մէջն է նա ցոյց տալիս իր հոգու իսկական ոյժը։

Նկարչի աչքն այնքան է նուրբ, որ չի կարողանում տանել նոյն իսկ արևի պայծառ լոյսը, իսկական արևելեան վառ գոյները։ Արևի պայծառ լոյսը, կարծես, յոգնեցնում, հիւանդացնում է նկարչի աչքերը, ուստի նա ընտրում է բնութեան մեղմ տեսարաններ՝ արևը դուրս գալիս և մայր մտնելիս, անձրև գալուց առաջ և յետոյ։ Բնական է, որ այդչափ նրբութիւն սիրող նկարիչը պէտք է աւելի եւս սիրէ լուսնեակ գիշերները, որովհետև այդ ժամանակ լոյսն առանձնապէս կախարդիչ մեղմութեան է հասնում։

Իր նկարներից և ոչ մէկում նա փորձ չի արել խարդախելու իր իսկական բնաւորութիւնը. և այդ պատճառով էլ դիտողը հիացած է մնում նկարչի ծրագրի նոյնութեան և հետևողութեան կիրառման վրայ։

Մարդու կեանքի հիմնական արուեստն է ճանաչել իր հոգու ինքնուրոյն և առանձնայատուկ կողմերը և գործել, ստեղծագործել համապատասխան այդ բնոյթագծերի։ Բաշինջաղեանը կեանքի այդ հանգոյցը իր անձի վերաբերմամբ կարողացել է մեծ յաջողութեամբ լուծել։

Բաշինջաղեանի նկարների ոչ միայն նիւթը, այլ և նիւթը մշակելու ձևը բարդ չէ։

Նա իրապաշտ՝ (րէալիստ) նկարիչ է՝ ամեն կերպ աշխատում է հաւատարիմ մնալ բնութեան իսկական տուեալներին, նոյն իսկ երբեմն ի վնաս ընդհանուր տպաւորութեան։

Նրա նկարները ներքին խորը՝ փոփոխութիւնների և հիմնական գունաւորման չեն ենթարկւում։ Հոգեկան ներքին աշխատանքն այնպէս է զարգանում, որ նրան յաջողւում է որքան կարելի է բնականին մօտ մի պատկեր։ Այս նպատակի իրագործումը շատ չէ դժուար ու բարդ. նիւթն ու գոյնը տալիս է բնութիւնը, նկարիչը փոքրիկ կոմբինացիաներով և փոփոխութիւններով գլուխ է բերում գեղարուեստական գործը։

Եւ այդ պատճառով էլ Բաշինջաղեանի նկարների մէջ կայ մի շատ հաճելի, մի մանկական անխարդախ միամտութիւն, մի սուրբ պարզութիւն, որն այնպէս քաղցր է ազդում, ինչպէս մայր բնութիւնը։

Բաշինջաղեանի նկարները դիտելիս մարդու հոգին մի հաճելի հանգիստ է զգում Շանթի միգանուշների աշխարհը կտաւի վրայ առարկայացած տեսնելիս։

Մեր բարդ ջղային ու շարժուն և բնութիւնից հեռացող այս կեանքում բիւրեղեայ պարզութիւն ներկայացնող նկարները չեն կարող հաճելօրէն չազդել նայողի վրայ, որ Բաշինջաղեանի նկարները ազդում են նոյն իսկ այն անհատների վրայ, որոնք նկարչական նրա ուղղութեանը չեն պատկանում։

Ինչու։ Որովհետև հոգին և աչքը որոշ ժամանակ բարդութիւններ, խորութիւններ դիտելուց յետոյ որոշ չափի յոգնում են, և նրանք կարիք են զգում մեղմութեան և անխարդախ պարզութեան։ Բաշինջաղեանի ազդեցութեան գաղտնիքը հէնց այդտեղ պէտք է որոնել։

Բաշինջաղեանի նկարների առթիւ կը ցանկայինք մի շատ հետաքրքրական երևոյթի վրայ մատնացոյց անել։ Վերջին տարիներս կրօնական կեանքից երկու նկար է նկարել՝ Գեթսեմանի պարտէզը և Յուդան մերկ խաչափայտի առաջ։ Ոչ այնքան առաջինը, որքան երկրորդը փորձում է մարդկային կեանքից մի դրամատիկ պատկեր տալ։ Մի լերկ, քարքարոտ բլրակի վրայ երեք խաչափայտ են բարձրանում. Թափուած արիւնից երևում է, որ այդտեղ քիչ առաջ մարդիկ են կախուած եղել։ Շատ հեռւում մթին են տալիս Երուսաղէմի տաճարի ծայրերը։ Լերկ խաչափայտի առաջ մենակ, մի փոքր կորացած, կանգնած է Յուդան։ Լուսնեակ գիշեր է։

Նիւթի ըմբռնումը ինքնուրոյն է, տպաւորութիւնը յուզիչ և դրամատիկ։ Նկարի վրայ երկրորդական մանրամասնութիւններ շատ կան, բայց չեն խանգարում ընդհանուր տպաւորութեանը. նայողի աչքն իսկոյն կենտրոնանում է խաչափայտերի և Յուդայի վրայ։

Այս նկարը ինձ շատ զարմացրեց, որովհետև Բաշինջաղեանի անցեալը և նրա հարիւրաւոր նկարները ոչինչ չեն ասում այն մասին, թէ նկարիչը կարող էր ցանկութիւն ունենալ զուտ հոգեբանական խնդիրների վրայ աշխատելու։ Այս եզակի փորձը սակայն միանգամայն յաջողուած պէտք է համարել։

### ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆ

Գեղարուեստի որակը կախուած է ժամանակից. ամեն մի սերունդ գեղարուեստական երկին մօտենում է այլ հոգեբանութեամբ, այլ կարիքներով, այլ պահանջներով։ Միջին դարու քրիստոնեան, վերածնութեան դարու աշխարհիկ քաղաքացին գեղարուեստից տարբեր պահանջներ ունէին. մէկը իր կրօնական զգացման եռն էր ուզում հանգստացնել գոթական եկեղեցիների մէջ, միւսը գեղեցկութեան ու ներդաշնակութեան զգացմունքներին էր գոհացում տալիս իր ժամանակի գեղարուեստական երկերի օգնութեամբ։ Հասարակական կեանքի հոգեկան տարբեր կարիքը ստեղծում է տարբեր գեղարուեստ։ Այդ տեսակէտից ոչ միայն դարաշրջանները, այլ և իրար յաջորդող երկու սերունդներն անգամ կարող են տարբերուել։ Ճաշակը այնպէս է փոփոխական, գոնէ իր արտաքին մանրամասնութիւնների մէջ, ինչպէս փոփոխական է մարդկային բնախօսական-հոգեկան բնոյթը։

*) Պարոն Իվան, ազատեցէք ինձ, ի սէր Աստուծոյ։

Թէրլէմէզեանը աւելի նոր սերնդի նկարիչ է, և ահա թէ ինչու։ Նոր նկարչութիւնը աւելի է ազդուած ինքնավերլուծմամբ և նիւթը հոգևորեցնելու տրամադրութեամբ։ Ամէն մի նիւթի մէջ տեսնում է հոգեկան մի որոշ վիճակ արտայայտելու հնարաւորութիւն։ Նիւթը չի տալիս այնպէս, ինչպէս բնութիւնն է թելադրում միամիտ ըմբռնմանը, այլ վերամշակում է հիմնովին, տալիս է նրա էութիւնը հոգեկան որոշ գունաւորումներից յետոյ։

Թէրլէմէզեանի ցուցադրած չորս հատ նկարներից երևում է, որ նա աւելի այս վերջին տիպի նկարիչ է։ Նրա նկարներից երեքը Վանայ լճի տեսարաններից են. ուրեմն՝ թէև սա էլ իրապաշտ՝ նկարիչ է, սակայն յօգուտ ընդհանուր տպաւորութեան խուսափում է մանրամասնութիւններից. միապաղաղ կապոյտ գոյնը բաւական է համարում լճի ջրի մասին գաղափար տալու համար։ Նրա նկարների մէջ կայ գեղեցկութիւն և տրամադրութիւն. փոքր բաներն անգամ նպաստում են նկարների հիմնական տրամադրութեան զօրեղացման, օր.՝ նկարներից մէկում լճի ափին կայ երեք ծառ, որոնք կազմում են այս նկարի գեղարուեստական ազդեցութեան հիմնական պայմանները։

Թէրլէմէզեանը մի դիմանկար էլ ունի. մեր հայ հեղինակ Շ.-նէ։ Թւում է, որ նկարիչը իր հիմնական նպատակը պարզ չի պատկերացրել. ցանկացել է նա մեր հեղինակին հոգեկան յղացման րոպէին տալ, բայց յղացումներով լի վայրկեանը դժուար թէ այդպիսի արտաքինի մէջ մարմնանար. ուզեցել է նրան պարզ, ասարակ դիտողութեան վայրկեանին պատկերացնել, բայց պարզ դիտողութեան վայրկեանային այդպիսի ձգուածութիւն և լարումն հնարաւոր չէ. նկատում ես, որ նկարուած մասները մի խնդրով, մի հարցով են զբաղուած, սակայն՝ չի պարզւում այդ ներքին ապրման որակը։ Դիտում ես, դիտում՝ մկանային և ինչ որ մի չամբողջացած գործի տպաւորութիւն ես ստանում։ Սակայն՝ մի բան մնում է պարզ. Թէրլէմէզեանը կարող է շատ լաւ դիմանկարիչ [illegible]նալ. և հոգեկանը մարմնի մէջ արտայայտելու վարպետութեան [illegible]ր տուեալներ ունի. նա կազմակերպուած, որոշ ուղղութեան, [illegible] բանական չեշտով իրապաշտ և յաջողակ նկարիչ է։

*ԽԱՉԱՏՐԵԱՆ*

Եթէ ցանկանանք այս նկարչին հէնց սկզբից բնորոշել, պէտք է ասենք գեղարուեստական ինչ յատկութիւններ ունին Բաշինջեանը և Թէրլէմէզեանը, սա չունի. սրա գեղարուեստական ուղին դեռ մշուշապատ է։

Խաչատրեանը թէև երիտասարդ նկարիչ է, սակայն նրա նկարչական նիւթը բազմազան է։ Երևում է, որ մարդը նրան աւելի է հետաքրքրում, սակայն ոչ պակաս եռանդով բնութիւն էլ է «նկարում»։ Անաչառ դիտողը, սակայն՝ այն եզրակացութեան կը գայ, որ Խաչատրեանը աւելի շնորհք է ցոյց տալիս «մարդ» նկարելու, համեմատաբար յաջող է նկարում կանանց պչրանքը, նուրբ ու ճկուն կեցուածքը, սիգութիւնը։

Խաչատրեանը դեռ մի էական խնդիր պէտք է պարզէ իր համար, ո՞ր նիւթն է իր հոգուն և իր առանձնայատկութեանը մօտ։

Ոչ միայն նիւթի ընտրութիւն, այլ և կատարումը թերատ է։

Մի քանի նկարների մէջ ցանկանում է գործողութիւն տալ և շարժուն ամբոխ ներկայացնել։ Գործողութիւն բարդութիւն նկատելն աւելի մեծ հասունութիւն է պահանջում, այդ պատճառով էլ Խաչ. այդ ուղղութեամբ դեռ շտապելու առանձին հիմքեր չունի։

Խաչ. նկարներին պակասում է ներքին հարստութիւնը, հոգեբանական խօսունութիւնը։ Նկարչական խնդրի խորը, բազմակողմանի, լիակատար մշակման ապացոյցներ չեն տալիս սրա գործերը։ «Հեի հե»ը, արագութիւնը նրա նկարների հիմնական յատկանիշներն են, իր ուշադրութիւնը չի կենտրոնացնում նիւթի վրայ, այլ մեղմօրէն սահում է վրայից։ Այդ պատճառով էլ նրա նկարները չեն յուզում, չեն ոգևորում, հիացնում, մեղմ կամ խորը գեղարուեստական վայելք ծնեցնում։ Խաչատրեանը տրամադրութիւն է ցոյց տալիս շաբլոնի նկարիչ դառնալու, այդ բանը այժմ առանձնապէս զգալի չէ, որովհետև նա դեռ երիտասարդ է, իր նիւթը փոփոխելով փրկում է իրեն առ ժամանակ, բայց վտանգը յետոյ կը գայ։

Խաչատրեանի մի քանի նկարները թոյլ են տալիս աւելի լաւ յոյսեր տածելու նկարչի ապագայի մասին. Նրա մի քանի նկարները ցոյց են տալիս, որ նա կարողանում է դիտել՝ կեանքը, մի քանի այլ նկարներ ասում են, որ նրան երբեմն յաջողում է ստեղծագործութիւնը (կանանց նկարներ). եթէ նկարիչը միացնէ դրանց համբերութիւն և նիւթը բազմակողմանի մշակելու կարողութիւն, կարելի է ասել, որ Խաչատրեանը յուսատու նկարիչ կըդառնայ։

Նոր նկարիչներից ամենից հետաքրքրականն է M. X. M.

Սրա գործերի մեծ մասը ծաղրանկար են, նիւթն է ժամանակակից պատերազմական կեանքը. իր այդ ծաղրանկարներով նա ետ չի մնալ գերմանական սիմպլիցիսիմուսի նկարիչներից։ Կիրթ, նուրբ ճաշակ, գծերի հազերան, առողջ հումոր, նիւթի իւրատեսակ ըմբռնում՝ ահա նկարչի յատկանիշները։

Գ. Էգիլեան

## Ք ր ո ն ի կ ո ն

Ս ե ն ա տ ո ր Կ ր ի վ ց ո վ ը, արտակարգ քննիչ յանձնաժողովի նախագահ, հրաւիրում է հայ ժողովրդին տեղեկութիւններ տալու իրան թիւրք կառավարութեան և զօրքի կողմից հայ խաղաղ ազգաբնակչութեան և կամաւորների վրայ գործադրուած վայրագութիւնների մասին։

— Երկրագործութեան նախարարի Կովկասի լիազօր իսկական քաղաքացիական խորհրդական Շ ա չ կ ո վ ս կ ի ն և քաղաքային վարչութեան անդամ Մ. Զաքարը հինգշաբթի երեկոյեան մեկնեցին Բագու՝ այնտեղում Թիֆլիսի և Կովկասի միւս քաղաքների համար մեծ քանակով շաքար գնելու։

— Այս համարից ուղարկում ենք որբերի ցուցակը առանձին թերթով, որ կը շարունակուի պարբերաբար։

— Վրաստանի նոր է կ զ ա ր խ արք-եպիսկոպոս Պ լ ա տ ո ն ը արդէն ուղևորուել է իր պաշտօնավայրը. Նորին Բարձր Սրբազնութեան գնացքը կը հասնի Թիֆլիս երկուշաբթի, ժամի 2-ին։

— Քաղաքային նոր իրաւատուների ընտրողների ցուցակը Թիֆլիսի նահանգապետը ներկայացրել է Կովկասի Փոխարքային իր դիտողութիւններով։

— Վ ր ա ց Բ ա ր ե գ. Ը ն կ.-թ ի ւ ն ը բացել է նոր ճիւղեր Շուլաւերում և Բորչալու գիւղում։

— Ռ ո ւ ս ա հ պ ա տ ա կ գ ե ր ի ն ե ր ի ն օգնող Թիֆ. կոմիտէի բիւրօն (Իզմայլովսկայա փողոց № 10) յանձն է առնում տեղեկութիւններ հաւաքել գերիների մասին նամակներ, փող ու կապոցներ ուղարկել, նոյնպէս անդամագրութիւն ու նուէրներ ընդունել։ Անհրաժեշտ է յայտնել գերու ազգանունը, անունը և այն զօրամասը, որտեղ ծառայել է։ Գաւառից եկած հարցերը պէտք է լինին գրաւոր և կարող են ուղարկուել բիւրօյին առանց նամակադրոշմի (մարկաների)։ Բիւրօն բաց է առաւ. ժամի 9—3 և երեկ. 5—8։

— Ռուս յայտնի բանաստեղծ Վ. Բ ր ի ւ ս ո վ ը ամսիս 13, չորեքշաբթի երեկոյեան ժ. 8-ին Թիֆլիսում, Արտիստական ընկերութեան դահլիճում կըկարդայ մի դասախօսութիւն հայոց գրականութեան մասին։ Տոմսակները ծախւում են «Մի բաժակ թէյ»-ում, իսկ դասախօսութեան օրը Արտիստական թատրոնում։

### ՀԱՅԿԱԿԱՆ ԹԷՅԱՐԱՆ

Յունուարի 6-ին Հայկական Կենտրոնական Կոմիտէի թէյարանում կայացաւ երեկոյթ։ Այնքան շատ և ընտիր հասարակու-

թիւն էր ժողովուել, որ, ինչպէս ասում են, ասեղ գցելու տեղ չէր կար։ Երեկոյթը կազմակերպող տիկինները — Շ. Օզանեանցը, Հ. Աֆթանդիլեանցը, Վ. Անանեանցը և միւսները չէին խնայել իրենց աշխատանքը և եռանդը երեկոյթը շքեղ և բովանդակելի դարձնելու։ Հրաւիրուած էին թատրոնի դերասաններ ու դերասանուհիներ, ի միջի այլոց և պ. Ամիրջանը։

Երեկոյթը անցաւ շատ ուրախ և տևեց մինչև գիշերուայ ժամի 2-ը։ Մի նկատողութիւն, որ պէտք է անել երեկոյթի ծրագրի առթիւ՝ այդ այն է, որ երեկոյթին չերգուեց և չարտասանուեց հայերէն և ոչ մի բառ։ Մուտք եղաւ 472 ր., ծախք մօտ 100 ր.

---

ՎՐԻՊԱԿ. — «Համբաւաբեր»-ի նախորդ համարում (№ 2) երես 48 նուիրատուների ցանկում տպագրուած է «Գ. Սերգէյ Իվ. Պօղոսեան», պէտք է լինի «պ. Ստեփան Իւ. Պօղոսեանի»։

---

Խմբագիր՝ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

---

# Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1 Дозволено военной ценз.

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 3

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

### ԴԻԼԻՋԱՆԻ I ԱՊԱՍՏԱՐԱՆ

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա- վայր | Տարիքը | Ծնող կամ մայր կամ հայր | Ծնողների տեղը | Գրագէտ է | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Արշակեան Հայկանուշ | Նոր-Վան | 11 | չունի | Էջմիածին | ոչ | |
| 2 | Աւետիսեան Մարգարիտ | Հերգ | 5 | ունի | յայտնի չէ | » | |
| 3 | » Արմէնուհի | Հարատուն | 10 | մայր | Երեւան | այո | |
| 4 | Արշակեան Արուսեակ | Արճակ | 11 | հայր | Կամաւոր | այո | |
| 5 | Արշակեան Աղաւնի | Հերմեր | 5 | հայր | Պօղոս-Քիլ. | այո | |
| 6 | » Աննման | » | — | » | » | » | |
| 7 | Առաքելեան Զարուհի | Յայտնի չէ | 4 | չունի | Էջմիածին | ոչ | |
| 8 | Առոյեան Մարօ | Խլաթ | 5 | հայր | գերի է | այո | |
| 9 | Աւետիսեան Ռեհան | Բերկրի | 9 | մայր | Դիլիջան | ոչ | |
| 10 | Առաքելեան Փունջէ | Խլաթ | 12 | չունի | Էջմիածին | ոչ | |
| 11 | Ասլանեան Սուլթան | Ալջաւազ | 11 | » | » | » | |
| 12 | Աբրահամեան Մարիամ | Գաւաշ | 11 | մայր | » | » | |
| 13 | Աղազարեան Շուշիկ | Վան | 11 | ունի | » | այո | |
| 14 | Աւետիսեան Ազնիւ | Մուշ | 7 | մայր | Դիլիջան | ոչ | |
| 15 | Աստուածատրեան Թովմաս | Մոխր. բերդ | 11 | ունի | Էջմիածին | » | |
| 16 | Աւետիսեան Անդրէաս | Կլուրցի | 10 | հայր | » | այո | |
| 17 | Արշակեան Միհրան | Էրմեր | 7 | » | Պօղոս-Քիլ. | » | |
| 18 | » Մկրտիչ | Նոր-Վան | 7 | չունի | | ոչ | |
| 19 | » Յարութիւն | » | 5 | » | | » | |
| 20 | Արմենակեան Նիկոլայ | Կղլատղ | 7 | » | | » | |
| 21 | Բաղալեան Սաթենիկ | Խլաթ | 13 | չունի | | այո | |
| 22 | » Շարէ | » | 10 | » | | » | |
| 23 | Գեղամեան Սուսան | Գաւաշ | 5 | » | Էջմիածին | ոչ | |
| 24 | Գրիգորեան Խուշուշ | Վան | 11 | եղբայր | Երեւան | այո | |
| 25 | Գալստեան Անթառամ | Գաւաշ | 6 | մայր | Էջմիածին | » | |
| 26 | Գրիգորեան Գիւլնազ | Խլաթ | 12 | չունի | Եղեան | » | |
| 27 | » Մարիամ | Հերիչաս | 13 | » | Իգդիր | » | |
| 28 | » Եաղդուզ | Գաւաշ | 14 | հայր | Զարխէչ | ոչ | |
| 29 | » Կէկէլ | Խոշ-Գեալդի | 9 | ունի | յայտնի չէ | » | |
| 30 | Գէորգեան Արամ | Հայտար | 12 | չունի | Դիլիջան | » | |
| 31 | Գրիգորեան Միսաք | Խարկամիզ | 12 | մայր | յայտնի չէ | » | |
| 32 | » Խաչատուր | Մոխրակերտ | 11 | չունի | | ոչ | |
| 33 | » Գուրգէն | Խաք | 10 | » | | ոչ | |
| 34 | » Ազատ | Խուրգամ | 8 | մայր | | » | |
| 35 | Գուլոյեան Մուշեղ | Կորձնա | 7 | » | Դիլիջան | » | յայտնի չեն |
| 36 | Գրիգորեան Գէորգ | Ախլաթ | 12 | չունի | | ոչ | ծնողները |
| 37 | Դաւթեան Խուրիկ | Փշավան | 10 | հայր | Էջմիածին | » | |
| 38 | » Կարմելիա | Վան | 11 | ունի | Մարգարա | այո | |
| 39 | Դարբինեան Դերենիկ | » | 12 | ունի | Թիֆլիս | » | |
| 30 | » Վազգէն | » | 9 | » | » | ոչ | |
| 41 | Դաւթեան Կարապետ | Կարճկ | 12 | մայր | յայտնի չէ | » | |
| 42 | Եփրեմեան Տիգրան | Գաւաշ | 9 | ունի | Երեւան | ոչ | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 43 | Եարամադեան Վասիլուհի | Վան | 11 | ունի | Բագու | այո |
| 44 | » Մարիամ | » | 13 | » | » | » |
| 45 | Թաղէոսեան Թագուհի | Ագրա | 17 | չունի | » | ոչ |
| 46 | Թորոսեան Ջաւարթ | Գանձակ | 9 | մայր | Երեւան | » |
| 47 | Թարոյեան Փիրսաղ | Պասենս | 11 | հայր | էջմիածին | » |
| 48 | Խաչիկեան Կարմելա | Վան | 10 | մայր | էջմիածին | այո |
| 49 | Խաչատրեան Թագուհի | » | 16 | չունի | | ոչ |
| 50 | » Գուրգէն | Աւան | 9 | ունի | Դիլիջան | այո |
| 51 | Խաչիկեան Սարգիս | Կլաթ | 10 | հայր | Բաթում | ոչ |
| 52 | Կարապետեան Նարգիզ | Հայդար | 15 | չունի | | » |
| 53 | » Հռիփսիմէ | » | 11 | » | | » |
| 54 | Կանդոյեան Արաքսի | Վան | 12 | ունի | էջմիածին | այո |
| 55 | Կարապետեան Արմենակ | Հայդար | 9 | ունի | յայտ. չէ | » |
| 56 | Համբարձումեան Գեւորգէ | Բթլաղ | 8 | չունի | | ոչ |
| 57 | » Բարկէն | Վան | 2 | » | | » |
| 58 | » Շողեր | յայտնի չէ | 3 | » | | » |
| 59 | » Սերովբ | Վան | 8 | » | | » |
| 60 | » Գեւորգ | Բրեշ | 8 | » | | » |
| 61 | Ղազարեան Կուտրաթ | Խլաթ | 7 | հայր | Կամաւոր | այո |
| 62 | » Շուշանիկ | Հասոս | 12 | մայր | էջմիածին | ոչ |
| 63 | » Փրափիոն | Գձարասեղ | 13 | հայր | Կամաւոր | այո |
| 64 | Մարտիրոսեան Շուշանիկ | Շաղ-Բաղ | 10 | ունի | Իգդիր | » |
| 65 | Մկրտչեան Շուշիկ | էջմիածին | 4 | » | էջմիածին | ոչ |
| 66 | » Շողեր | յայտնի չէ | 4 | » | » | » |
| 67 | Մնացականեան Աղաւնի | Հագրան | 12 | մայր | Երեւան | այո |
| 68 | Մուրադեան Մայրանուշ | յայտնի չէ | 6 | չունի | » | ոչ |
| 69 | Մկրտչեան Մարիամ | Մոկս | 9 | չունի | » | ոչ |
| 70 | » Փառանձեմ | Վան | 12 | չունի | » | ոչ |
| 71 | Մանուկեան Շարէ | Խլաթ | 11 | չունի | | ոչ |
| 72 | Մանուկեան Արշալոյս | Կարաբաղ | 11 | մայր | Դիլիջան | այո |
| 73 | Մարգարեան Արմենուհի | Վան | 11 | ունի | էջմիածին | » |
| 74 | Միհրանեան Ոսկի | Կող | 13 | չունի | | ոչ |
| 75 | Մելքոյեան Սաթենիկ | Ներանց | 14 | մայր | էջմիածին | » |
| 76 | Միսոյեան Սատափ | Խօշ-Գալլի | 13 | չունի | | » |
| 77 | Մկրտչեան Կալիփսէ | Թերձ | 10 | » | | » |
| 78 | Մարգարեան Միրանօ | Վարդեր | 14 | » | | » |
| 79 | Մանուկեան Նազէ | Հանդստան | 15 | մայր | էջմիածին | » |
| 80 | Մխիթարեան Վարդանոյշ | Նարեկ | 12 | ունի | Դիլիջան | այո |
| 81 | Մանուկեան Մարօ | » | | » | » | ոչ |
| 82 | Մարկոսեան Վարսենիկ | Բերդ | 5 | ունի | » | այո |
| 83 | Մնացականեան Անթառամ | Ազրան | 10 | մայր | » | ոչ |
| 84 | Մէյխանաջեան Վարդիթեր | Վան | 10 | » | Իգդիր | այո |
| 85 | Մխիթարեան Գարեգին | Նարեկ | 8 | » | էջմիածին | ոչ |
| 86 | Մկրտչեան Թոփոյ | Տառվան | 11 | » | » | այո |
| 87 | Մանուկեան Խաչատուր | Վան | 9 | չունի | | ոչ |
| 89 | Մկրտչեան Կարապետ | Զագեդ | 9 | ունի | էջմիածին | » |
| 90 | » Համբարձում | » | 8 | » | » | » |
| 91 | Մանուկեան Մուրադ | Վան | 7 | չունի | | » |
| 92 | Մարտիրոսեան Մուրադ | Արագ | 11 | » | | » |
| 93 | Միհրանեան Լուսիկ | Փորր-գիւղ | 7 | մայր | » | » |
| 94 | Մելքոյեան Գայիանէ | Օրան-գալ | 11 | չունի | | այո |
| 95 | Մարգարեան Աշխէն | Ագրախ | 11 | եղբայր | Կամաւոր | ոչ |
| 96 | Մկրտչեան Ոսկոյ | Գաւաշ | 12 | մայր | էջմիածին | » |
| 97 | Մուրադեան Սիրուն | Սեւան | 11 | չունի | » | » |
| 98 | Մեհրեան Լուսիկ- | Կոփ | 6 | » | | այո |
| 99 | Յարութիւնեան Վարդանոյշ | Բոլնի | 15 | մայր | էջմիածին | ոչ |
| 100 | Յակոբեան Կարաւ | Նոր-բերդ | 10 | ունի | » | » |
| 101 | Յարութիւնեան Բերսաբէ | Կզգի | 11 | չունի | | » |
| 102 | Յովաննիսեան Նուբար | Գրուբաշ | 7 | մայր | Իգդիր | » |
| 103 | Յակոբեան Վարսենիկ | Խարգամ | 5 | » | էջմիածին | այո |
| 104 | Յովսէփեան Ազնիւ | Կզլգաղ | 10 | » | Երեւան | » |
| 105 | Յովհաննիսեան Մարիամ | Գագով | 12 | չունի | | » |

Կը շարունակուի.